ISSN 0134-5257




# ԴԻՈՆԵՐ 1989 12

Մինչև վերջերս արևմտահայ ու սփյուռքահայ շատ հեղինակներ Հայաստանում արգելված էին: Գաղափարաքաղաքական կասկածելի նկատառումներով անտեսված էր նրանց ստեղծագործության բուն գեղարվեստական արժեքը: Ու մինչ նրանք, որպես խոսքի ազնվագույն մըշակներ, գրել ու գրում էին «հայ հոգու պատմությունը», իրենց հայրենիքում նըրանց չէին տպագրում, ժողովուրդը չէր ընթերցել ու չգիտեր նրանց: Սրանից ավելի տարօրինակ բան դժվար է պատկերացնել, գրողի համար սրանից ավելի մեծ ողբերգություն չի կարող լինել: Այդ հեղինակների՝ Համաստեղի, Ավետիս Ահարոնյանի, Մուշեղ Իշխանի և այլոց վիճակում էր նաև Հակոբ Կարապենցը, որի արձակը զուտ հայկական շնչառություն ունի, աչքի է ընկնում ճշգրիտ դիտողականությամբ, զգացմունքային ու իմացական բազմաշերտությամբ, հայոց հրաշք լեզվի գունեղ խաղարկումներով:

Հ. Կարապենցը ծնվել է Պարսկաստանում, տարբեր երկրներում է ապրել ու վերջնականապես հաստատվել Ամերիկայում: Ներկայացվող հատվածները վերցրել ենք 1975 թվականին լույս տեսած «Նոր աշխարհի հին սերմնացաններ» ժողովածուի «Զեֆըրսոն» էսսեից, որը, պատկերավոր ասած, գրքի պայծառ ու կամարակապ մուտքն է:



ՀԱԿՈԲ ԿԱՐԱՊԵՆՑ

# ԶԵՖԸՐՍՈՆ

Հայերը Զեֆըրսոն են հասել աշխարհի գրեթե բոլոր կողմերից: Տարագիրներ՝ տարագիրների այս երկրում: Ոմանք մի քանի տարագրություն են տեսել: Հաճընցի Հովհաննեսը տուն-տեղ թողած հաստատվել է Կահիրե, ապա անցել Հալեպ, այնտեղից՝ Բեյրութ ու վերջն էլ Զեֆըրսոն: Նա հիմա իր տան պարտեզում նըստած կարոտում է իր մյուս տները: Քար չէ, սիրտ է, չէ՞: Իսկ սիրտը քանի՞ կտոր կարող է լինել: Եկել են Արևմտյան Հայաստանից, Մերձավոր Արևելքից, Եվրոպայից: Հայեր կան նաև Հնդկաստանից: Նույնիսկ Խարբինից ու Ջավայից: Բարբառների ու սովորույթների մի իսկական տոնահանդես: Երբեմն չեն հասկանում իրար: Բավական է, որ հայ է: Աչքով-հոնքով են խոսում: Հոտոտում են: Զգում են, որ իրենցից է: Այդ սքանչելի գավառցիները: Ամենից իրականն ու անըմբռնելին այն է, որ բոլորն էլ ամերիկացի են, այնպես՝ ինչպես ամերիկացի Ջո Սմիթը կամ Ջիմ Բրաունը: Հիմա մեր բալուցի Մինասը աստղաֆիզիկոս է: Տիկին Փառանձե-

մը օպերայի երգչուհի է: Իսկ վաճեցի Մանուկը՝ բանկի տնօրեն: Մեր քաղաքի հայերը հիմա մեծ մարդիկ են դարձել: Մեծ ու համարձակ շարժումներով են խոսում: Բայց բավական է, որ նրանց մորթը քերես, տակից անպատճառ դուրս կգա խելացի արաբկիրցին, ձեռներեց խարբերդցին, հանդուգն սասունցին, հղկված պոլսեցին, և Մարաշ, և Մուշ, և Կարին ու Տրապիզոն, և դեռ այնպիսի ներքնագավառներ, որոնց մթին ծագումը թերևս հայտնի է միայն Քսենոփոնին: Եկել են, շինել ու շենացրել քաղաքը...

Հոգնին դեռ լրիվ չկողմնորոշված՝ մի օր հավաքվեցին, քարը քարի վրա դրեցին ու եկեղեցի շինեցին: Մի բիրտ մատուռ: Դարբին Առաքելը իր ձեռքով խաչը կոփեց: Անունը մկրտեցին Սրբոց Նահատակաց: Եվ ամեն օր մոմ վառեցին: Այլևս վճռել էին չմեռնել: Ամիսը մեկ անգամ հեռավոր քաղաքներից քահանա էր գալիս և մկրտում նորածիններին: Մանուկների երեսին մյուռոն էր քսում: Ու մինչ մայրերը սերունդ էին հասցնում, տղամարդիկ, աշխատանքից հոգնած՝ գնում, նստում էին «Եփրատ» սրճարանի չոր աթոռների վրա և անընդհատ վիճում: Ուզում էին եղածը հասկանալ: Օղի էին խմում, թթու դրած վարունգ ուտում և փորձում ընդհանուր հայտարարի բերել եղածը: Չէր ստացվում: Մի տեղ, մի անպատմելի ժամանակ, խախտվել էր մի բան: Տրամաբանությունը տեղ չէր հասնում: Տրամաբանություն չէր մնացել: Ամեն ինչ դարձել էր բնազդ...

... Համաշխարհային երկրորդ պատերազմի ավարտից հետո սկսվեց հայ տարագրության մի այլ հոսք դեպի Հյուսիսային Ամերիկա: Գալիս էին Արևելյան Եվրոպայից և Միջին ու Մերձավոր Արևելքից: Տուն-տեղ քանդած՝ գալիս էին սկսելու նորը: Եվ հենց այն օրերին, երբ Ջեֆըրսոնի հայ գաղութը հոգնության նշաններ էր ցույց տալիս, նորեկները իրենց հետ բերեցին ազգային նոր կենսունակություն ու ավիշ, այսպես ասած, հայկականության նոր արյուն սրսկելով համայնքին: Հայերենը անցավ առաջին գծի վրա: Բարբառները էլ ավելի գունագեղվեցին: Եվ հայերը նորից սկսեցին բարձրաղաղակ խոսել փողոցներում: Նորերը թրծված մարդիկ էին՝ քարի տակից հաց հանող աշխատավորներ: Նրանք չունեին հետեղեռնի շրջանին հատուկ վեհերոտությունը: Նետվում էին այս ու այն կողմ, և տարին անցած՝ ստեղծում կոկիկ տնտեսություն, գործ ու դիրք:

... Ստեղծված են Նոր Աշխարհի հին սերմնացանները՝ Մեծ Եղեռնի երբեմնի որբերն ու խլյակները: Բեկվել է նրանց հոգին, թեքվել նրանց տեսադաշտը, և դիվահարի պես օրը հազար անգամ նրանք ապրում են մարտիրոսների մահը: Ատում են իրենց, երբ փորձում են հանդուրժել այլոց և ատում այլոց, երբ ամենից հեռավոր մի երևույթ դույզն չափով ստվերում է իրենց ազգային արժանապատվությունը: Հոգեկան լարված ցանցերի մի անքակտելի հանգույց են հին սերմնացանները՝ արտաքնապես այդ պարզ ու խոնարհ գյուղացիները: Ու սակայն հենց այդ ծանրաշարժ ու դիվահար գավառցիներն են, որ նյութական հայրենիք են կերտել Հայաստանում և հոգեկան Հայաստան Սփյուռքում: Այդ նախկին աղանդներ-լրության ակնցիներն ու կյուրինցինե-րն են, որ հայրենի կալ ու մաճ թողած՝ ընկել են Ջեֆըրսոնի կպրապատ փողոցները և բեկոր առ բեկոր կառուցել քաղաքն ու իրենց համայնական տունը: Այդ բոլորն արել են մեր քաղաքի հին սերմնացանները, որպեսզի իրենց զավակներն ու զավակների զավակները ապրեն ու հարատևեն որպես հայ, որպես ժառանգները հինավուրց Հայաստանի:

... Ամենաանհասկանալին Ամերիկան չէ, այլ իրենք, իրենց հոգին: Արդեն իրենք իրենց հոգու գերին են: Ամերիկյան քաղաքացիության քառասուն վավերագիր տուր իրենց, նորից կասեն, որ իրենք հայ են: Ոչ միայն հայ, այլև բեսլցի, այնթապցի, եղեսիացի, կամ Աստված գիտե որտեղացի: Ճիշտ է, Ամերիկայի հանդեպ նրանց զարմանքը մշտատև է, սակայն այդ այնքան էլ կարևոր չէ: Կարևորն այն է, որ Ամերիկայում գտնվելով հանդերձ, նրանք Ամերիկայում չեն ապրում: Կերտել են իրենց ուրույն պատյանը, մտել մեջը և ամփոփվել: Հոգ չէ, թե այդ նեղլիկ անցքից դրսի մակարդակը բեկբեկուն է: Այդ արտառոց ինքնամեկուսացումն նրանց տառապանքի ու հարատևության աղբյուրն է: Թող ամերիկացիները լուսին հջնեն: Հետո՞ ինչ: Իրեն ի՞նչ: Իրեն ի՞նչ օգուտ: Ինքը համոզված է, որ մենակ է աշխարհում մի բուռ աշխարհացրիվ իր արյունակիցների հետ: Իր նպատակը վերադարձն է: Այդ իղձը սրտին մի օր հասել է Ամերիկա: Եկել են Ամերիկա: Սև օրերի բեռը շալակած՝

եկել են Ամերիկա: Եկել են որդեկորույս, կնակորույս, հայրակորույս, մայրակորույս: Հայրենակորույս:

Նրանք հասել են Ամերիկա:

Հասել են Նոր Աշխարհի հին սերմնացանները՝ Արևմտյան Հայաստանի այդ խոժոռ, խոնարհ զավակները: Հասել են և դեռ տրեխները չհանած՝ իրենց քրտինքն են խառնել հողին ու կույրին՝ մի կտոր հացի և մի բուռ արդարության համար: Եվ երբ քուրայի թեժ կրակն են բորբոքել, Հայաստանն են հիշել: Քար են կրել, պողպատ են ձուլել ու երգել Հայաստանը: Կրկին անգամ տուն-տեղ են շինել և օրհնել Հայաստանը: Հարսանիքի մեջ թե թաղման ժամանակ ներկա է եղել Հայաստանը: Զավակներին դպրոց ուղարկելիս նրանց մեջ խոսել է Հայաստանը: Երգել ու պարել են հայությունը պահպանելու համար: Դաշտահանդես են գնացել, ճառել, խմել ու հարբել՝ կրկին Հայաստանի համար: Օրնիբուն տքնել են, հառաջացել ու հարստացել հանուն Հայաստանի: Հայհոյելիս անգամ Հայաստանի մրրիկներն են հիշել: Մայր են կորցրել, Հայաստանն իրենց մայրն են համարել: Հայր են կորցրել, Հայաստանը իրենց հայրն են նկատել: Կռվել են իրար հետ, միմյանց գլուխ կոտրել միմիայն հայության համար: Ծուռ են նստել, խաբել հաճախ մի կերպ հայության շահերը պաշտպանելու համար: Զուռնա են նվագել, թմբուկ զարկել և ասել՝ «Կեցցե Հայաստան»: Կերակուրների մեջ նույնիսկ հայություն են դրել: Հայերեն թերթը վերցրել են, մեկ ծայրից մյուսը կարդացել ոչ այնքան զարգանալու, որքան ազգային իրենց պարտականությունը կատարած լինելու համար: Որ լինի հայ գիր ու գրականություն, որ հայությունը շարունակվի իրենց ու իրենց զավակների մեջ: Ու դեռ ավելին: Ձգտել են լավագույնին, որպեսզի լավերից հետ չմնան, որ չասեն, թե հայերը անճարակ ու անշնորհք ժողովուրդ են: Սերմ են ցանել, պարտեզ է կանաչել: Քար են քաշել, ապարանք է բարձրացել: Երկաթը երկաթին են միացրել, գործարան է դուրս եկել: Իսկ երբ Ալֆայից մինչև Օմեգա են հասել, գիտության կածաններն ու արվեստից տաճարներն են լցրել հայորդիներով: Այս բոլորն արել են, որպեսզի հավերժ լինի Հայաստանը: Որ անխախտ մնա հավատքը հանդեպ հայության ու Հայաստանի:





# ...Եվ քո ցեղի ցավը կրիր

Ել, Դիցուհի,
բավ է նիրհես մոռացության անձավներում,
ել, Անահիտ:
Թեև վաղուց քեզ չենք տվել
պաշտամունքի ոչ մի կաթիլ,
և խռովքի մառախուղն է սիրտդ պատել,
քո վառ ոգին մեր արյան մեջ լո՞ղ է տալիս
իր աննկատ ելևէջով
ու մեզ պահում միշտ արգավանդ,
բեղունության ձայնին հլու:
Բայց եռակի զորանում ենք,
երբ արթուն է մեր շուրթերին անունը քո,
երբ հրաբորբ պատկերիդ դեմ
մաքրվում ենք ներս ու դրսից:
Տարիներն այն, որ չեն լցված
աստվածային քո շշունչով,
մեզ պատժում են չոր ամլությամբ
և տագնապով պառակտումի...

Ել, Դիցուհի,
ել, քո կապույտ աչքերով տես,
թե ցավի ինչ նոր փոթորիկ
պայթեց ցեղիդ հոգնած գլխին,
երբ թվում էր՝
խիստ բաղձալի դուռ կբացվի
Եվ դարավոր տառապանքից հետո մի պահ
հուր խնդությամբ կողողվենք...

Քեզ, Անահիտ,
ցեղիդ վառված սիրտն է կանչում,
ել ու գնա,
լքիր հավետ անձավները մոռացության,
ուր քեզ ոչ ոք չի ճանաչում
և չեն ուզում տեսնել ոգիդ:
Ել ու գնա քո ցեղի մոտ,
Նրա ցավի չափն իմացիր,
որ նենգամիտ կորուստներից հեռու պահես
և տաս նրան զորացումի նոր հնարներ...



Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Օ, Դիցուհի, դու չես փոխվել,
քո մեջ դարձյալ բեղունության կրակն է վառ,
ուստի՝ արագ ճամփա ընկիր երկրին հայոց
և քո հրաշք խոսքերն ասա:—
Հայ հարսներին շռայլանքդ տուր,
որ երկունքի լույս զգենան
ու կորստյան ողբերի մեջ
չսպառվեն ու լինեն արի:
Հայ այրերին կորովդ տուր,
որ չճկվեն ոչ մի կռվում
և հայրենի տունը սիրեն
իրենց անձից խիստ առավել:
Հայոց հողին տուր զարթոնքն այն,
որ բաժանված կտորները նորից իրար
միաձուլվեն...

Լույս Դիցուհի, հայտնի է ինձ՝
սահման չունի զորությունդ աստվածային,
սակայն եթե տկարանա մարմինը քո
և մշուշվի միտքդ պայծառ
(այս աշխարհում հեշտ չէ անգամ
աստվածների համար հզոր),
ապա եղած ավյունը քո
գոնե հասցրու հայ հարսներին,
որ չընդհատվող կորուստների ճանապարհին
նրանք ծնեն
հանուն Ցեղի...
Էլ, Անահիտ,
էլ, Դիցուհի,
լքիր ընդմիշտ անձավները մոռացության
և քո ցեղի ցա՛վը կրիր:



Լուսանկարները՝ ԷՌՆԵՍՏ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# «Ես Մաշտոցյան եմ»

Կյանքն իր ուղղումներն է կատարում: Հայ ժողովուրդը վերածնության, ինքնամաքրման ընթացքով է ապրում, ազատագրվում է տասնամյակներով պարտադրված օտար գաղափարներից ու համընդհանուր կաղապարներից: Ազգային հիմքերին վերադառնալու, գլխավորն ու առաջնայինը ազգային շահերն ու խնդիրները գիտակցելու ճանապարհով են ընթանում նաև հայ մանուկներն ու պատանիները, Հայաստան աշխարհի վաղվա տերերը: Նրանք փորձում են այս պահից նախապատրաստել իրենց գալիք օրը, և ոչ ոք զորու չէ նրանց կանգնեցնել կամ խանգարել: Նրանք հոգնել են մանկական ու պատանեկան միութենական ձևական կազմակերպությունների անդամը լինելուց, նրանց տարբերանշանները կրելուց և հիմա հրաժարվում են: Քաղաքում եռագույն վզկապներով երեխաներ են հայտնվել, հոկտեմբերիկի նշանը փոխարինվում է փոքրիկ եռագույնով, պատանեկան նոր կազմակերպություններ են ձևավորվում, սկաուտական շարժում է սկսվել, շատ դասարաներ նույնիսկ իրենց ֆիդայական խմբերն ունեն: Ընկերոջս որդին եռագույն վզկապով դպրոց էր գնացել և տուն էր եկել հպարտությունից շողշողալով.

— Գիտե՞ս, հայրիկ, փողոցում մի պապիկ կանգնեցրեց ու համբուրեց եռագույնը:

Ի՞նչը կարող է սրանից ցնցող լինել: Դեռ մի քանի էլ գիրք էր նվիրել: Ահա այսպես: Եվ մի օր էլ խմբագրություն զանգահարեց № 185 դպրոցի ուսուցչուհի



Սուսաննա Սահակյանը:— Խնկո Ապոր անվան գրադարանում մեր առաջին դասարանցիները մաշտոցական են ընդունվելու, ուզում ենք՝ ներկա լինենք:

Ծառլ Ազնավուրի «Քեզ համար, Հայաստան» երգի ուղեկցությամբ, 5-րդ դասարանցի Գայանե Տուրյանը ոգևորված արտասանում է Պարույր Սևակի «Քիչ ենք, բայց հայ ենք» բանաստեղծությունը: Երեխաները միմյանց շարունակելով ազգային երգեր են երգում, արցախյան պահանջատիրության մոտիվներով քառատողեր արտասանում.

Մենք արթնացել ենք դարերի քնից,
Եվ ինչ էլ լինի, չենք քնի նորից:

Տոնախմբությունը երկար շարունակվում է: Այնուհետև դասղեկները երեխաների կրծքերին ամրացնում են հայոց այբուբենի պատկերով ժապավենազարդ կրծքանշաններ: Դպրոցն է պատվիրել:

— Մեր դպրոցում երրորդ դասարանից հայկյան են ընդունվում,— պատմում է ինձ բարձր դասարանցի մի աղջիկ,— ջոկատները դարձրել ենք վաշտեր, իսկ դրուժինան՝ աշխարհազոր: Ես էլ աշխարհազորայինների նախագահն եմ, անունս՝ Վարդուհի Մուրադյան,— հպարտությամբ ու աղջկական անմիջականությամբ ավելացնում է նա: Ահա: Ուրեմն, սա էլ այսպես: Իսկ դահլիճում արդեն մանկական զնգուն ու զուլալ ձայնի հրավառություն է՝ հնչում է մաշտոցականների երդումը.

Դառնալով փոքրիկ մաշտոցական,
Երդվում եմ լինել զինվոր իսկական,
Պատիվը ազգի միշտ բարձր պահել,
Մեր նախնիների խոսքը կատարել:

Հրաշալի առավոտ էր: Ներկաներս ինչոր կարևոր բան վերագտածի զգացողություն ունեինք: Բայց ահա թե ինչ եմ ուզում ավելացնել: Այս ընթացքը տարեբայնորեն շարունակվելու է: Հայոց համազգային շարժման համագումարում ելույթ ունեցած երեխան ասաց, որ իրենց դպրոցում անդրանիկյան ու ֆիդայի են ընդունվում: Այլ տեղերում այլ անուններ կծնվեն: Անհրաժեշտ է թերևս մի ընդհանուր եզրակացության գալ, ստեղծել հայ մանկանց ու պատանիների ազգային կազմակերպություններ: Միատեսակ անուններ ընտրել: Ես քվեարկում եմ մաշտոցականի օգտին:

Աղվան ՎԱՐԴԱՆՅԱՆ

GIVE US BOOKS; GIVE US WINGS!

# Տվեք մեզ գրքեր՝ թռչելու թևեր

Խնկո-Ապոր անվան մանկական գրադարանում տոնական տրամադրություն էր: Ցուցավահանակին նկարված էր ամերիկյան համրահայտ հերոս Միքի Մաուսը, անգլերեն և հայերեն գրված էր. «Տըվեք մեզ գրքեր՝ թռչելու թևեր»: Ամենքը սպասում էին ամերիկյան մանկական գրքի ցուցահանդեսի բացմանը: Իսկ մինչ այդ տեղի ունեցավ մամուլի ասուլիս, որին մասնակցում էին Միացյալ Նահանգներից եկած հյուրերը՝ հրատարակչության տնօրեն Իլայ Ֆլեմը, աշխատակիցներ Ջուան Ադըրհոլմ Ադոմայտիսը, Պետեր Ֆեդիննկին:

Ի. Ֆլեմը ասաց, որ Երևանը երրորդ քաղաքն է՝ Լվովից և Վիլնյուսից հետո, ուր անց է կացվում մանկական այս ցուցահանդեսը: Նա պատմեց, թե ինչպիսի ուշադրություն են հատկացնում Ամերիկայում մանկական գրականությանը, ինչպես են հաշվի առնում երեխաների հակումներն ու պահանջները, ուսումնասիրում նրանց կարծիքները այս կամ այն հեքիաթի, ստեղծագործության նկատմամբ: Ընթերցող-հրատարակիչ ամուր կապի շնորհիվ մեծանում է հետաքրքրասիրությունը գրականության հանդեպ, ավելանում մանուկ ընթերցողների քանակը: Եվ պատահական չէ, որ Միացյալ Նահանգներում 1989 թվականը հայտարարված է պատանի ընթերցողի տարի: Վերջում տնօրենը հայտնեց, որ Երևան բերված 650 գրքերը (ի դեպ՝ նրանց մեջ է նաև հարուստ ձևավորումներով «Մանկական աստվածաշունչը») ամերիկյան հրատարակիչները նվիրում են Խնկո-Ապոր անվան գրադարանին:

Այնուհետև կայացած հարցուպատասխանի ընթացքում պարզվեց, որ ամերիկյան Հյուսթոն, Սան-Ֆրանցիսկո և Ատլանտ քաղաքներում խորհրդային գրքի ցուցահանդեսներ կան, որոնցում ներկայացված են նաև Հայաստանում հրատարակված 60 գրքեր:

Ցուցահանդեսի բացման արարողությունից առաջ գրադարան ժամանեց նաև ԽՍՀՄ-ում ԱՄՆ-ի արտակարգ և լիազոր դեսպան Ջեկ Մեթլոքը: Ի զարմանս բոլորի, նա ներկաներին դիմեց հայոց լեզվով և ջերմ խոսքեր ասաց հայ մանուկներին:

Այցելուները ուշադրությամբ ծանոթացան ցուցահանդեսի նյութերին, ամենքի հիացմունքին արժանացան ներկայացված գրքերի մեզ համար երազելի տպագրա-







Լուսանկարները՝ ԷՌՆԵՍՏ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

կան մակարդակն ու հրաշալի պատկերազարդումները: Եվ իհարկե ուրախալի է, որ այսուհետ հայ երեխաները կարող են օգտվել ամերիկյան մանկական հրատարակություններից, ընդլայնել իրենց հետաքրքրությունների ու իմացության շրջանակները:

Անահիտ ԳԱԼՍՏՅԱՆ



ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՀԱՅ ՄԱՐԶԻԿ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԵՋ

ՉՐՈՒՅՑ ՔԱՌԱՍՈՒՆՀԻՆԳԵՐՈՐԴ

# Վարազդատ

Ինչպես պետությունները էին մրցում՝ թե ով պետք է իշխողը լինի, այնպես էլ մարդկանց մեջ մրցություն կար, մանավանդ իշխանավորների մեջ: Հայ նախարարները մրցում էին իրար հետ, նաև թագավորի հետ: Ուժեղներից ամեն մեկն ուզում էր՝ ինքն ամենաուժեղն ու ամենաառաջինը լինել: Այդ մրցությունը բոլոր ազգերի մեջ կար և բոլոր պետությունները էլ դրանից թուլանում էին: Հայերի մեջ դա հատկապես նկատելի էր Տրդատ Մեծից հետո: Հայ նախարարների մեջ այդ մարմաջը գնալով սաստկացավ և գնալով ավելի ու ավելի թուլացրեց Արշակունիների հայոց պետությունը:

Պապի որդիները շատ փոքր էին, և նրա սպանությունից հետո, Հռոմի Վաղես կայսրի համաձայնությամբ, հայոց թագավոր դարձավ Պապի եղբորորդի Վարազդատը: Նա եղել էր հույների մեջ, և Վաղես կայսրը կարծում էր, թե իրեն հլու հնազանդ հայոց թագավոր կլինի: Բայց սխալվեց:

Փավստոսն այսպես է նկարագրում Վարազդատին. «Նա տարիքով պատանի էր, արիասիրտ, հզոր ձեռքերով, քաջ սրտով, բայց... մանկամիտ»: Վարազդատը մարզիկ էր, հաղթանակներ էր տարել օլիմպիական խաղերում, հմուտ նետաձիգ էր, բռնցքամարտիկ:

Պարսիկները դժգոհ էին, քանի որ Վարազդատը թագավոր էր դարձել առանց Պարսկաստանի համաձայնության: Իսկ Հռոմը շատ գոհ էր, քանի որ համոզված էր, որ Վարազդատն իր ձեռքին հնազանդ գործիք կլինի:

Բայց Վարազդատն իր նախորդ Արշակունի թագավորների նման ինքնուրույն քաղաքականություն էր վարում՝ ոչ Հռոմին էր հլու, ոչ Պարսկաստանին:

Արքունիքում կարևոր դեր ուներ Վարազդատի դայակ Բատը՝ Սահառունիների նախարարական տնից: Նա մտադրվել էր Մուշեղ Մամիկոնյանին ասպարեզից հանել, որ ինքը դառնա սպարապետ:

Իսկ Մուշեղը շարունակում էր հայպարսկական սահմանը պահել: Նա մի ծրագիր առաջարկեց. Հայաստանի կենտրոնից մինչև Պարսկաստանի սահմանը, ամեն գավառում կառուցել բերդեր և Հռոմի դրամով նրանցում զորք պահել:

Մուշեղ Մամիկոնյանն առհասարակ ավելի շատ հռոմեական կողմնորոշում ուներ, իսկ Վարազդատի թագավորության օրոք նրա այդ կողմնորոշումն ուժեղացել էր: Մինչև Պարսկաստանի սահման բերդերի շղթա կառուցելը, որ Հռոմի ներկայացուցիչների հավանությանն էր արժանացել, պարզ հակապարսկական ծրագիր էր՝ հօգուտ Հռոմի: Բատ Սահառունին հակահռոմեական հակումներ ուներ և դեմ էր այդ ծրագրին: Դրան դեմ էր նաև անկախ քաղաքականություն վարող Վարազդատը: Իսկ Մուշեղ Մամիկոնյանը մեծ հեղինակություն ուներ հայոց արքունիքում և հայ ժողովրդի մեջ: Նրան հակառակվելը դժվար էր: Թագավորն ու Բատ Սահառունին որոշում են Մուշեղին վերացնել ասպարեզից:

Փավստոսը գրում է, թե Վարազդատին Բատ Սահառունին է համոզում սպանել Մուշեղին: Ըստ Փավստոսի, Բատը Մուշեղին անընդհատ վատաբանում է Վարազդատի մոտ, նրան մեղադրում է Շապուհի կանանցը վերադարձնելու, Աղ-

վանքի Ուռնայր թագավորին չսպանելու և այլ բաների համար: Պապ թագավորի սպանության մեղքն էլ գցում էր Մուշեղի վրա: Քանի որ Մուշեղը հռոմեասեր էր, բացատրում էր Բատը,— նրան դուր չէր գալիս Պապի անկախ քաղաքականությունը և Հռոմին չհնազանդվելը: Դա էլ, Բատի ասելով, պատճառ է դարձել, որ Մուշեղը մասնակից լիներ Պապ թագավորի սպանությանը: Ըստ Փավստոսի, Բատը Վարազդատ թագավորի մոտ Մուշեղին ամբաստանելիս ասում էր նաև, թե Մուշեղը կարող է Վարազդատից խլել հայոց թագավորական գահը, երկիրը հանձնել Հռոմի տնօրինությանը:

Պապ թագավորի սպանությանը Մուշեղի մասնակցությունը քիչ հավանական է, իսկ թագավոր դառնալու նրա ցանկությունը լիովին անհավանական է: Հավանականն այն է, որ Բատ Սահառունին փառասիրաբար հայոց սպարապետ դառնալու համար չարախոսած լինի Մուշեղին: Սակայն պարզ է նաև մի այլ բան. Վարազդատի օրոք Մուշեղի՝ գնալով մեծացող հռոմեասիրությունը և հակապարսկական դիրքը դուր չէր կարող գալ Բատ Սահառունուն և Վարազդատ թագավորին, ինչպես և պարսկասեր նախարարներին:

Մուշեղի դեմ դավադրություն է կազմակերպվում: Հատուկ նպատակով հրավիրված մի խնջույքի ժամանակ, երբ թագավորի մարդիկ հանկարծ Մուշեղի ձեռքերից ամուր բռնում են, սպարապետը հարցական նայում է Վարազդատ թագավորին՝ իմանալու համար, թե ի՞նչ է կատարվում: Թագավորն ասում է. «Գնա Պապ թագավորի մոտ, հարցրու և կիմանաս, թե ինչից է»: Այս ասելով թագավորը դուրս է գալիս խնջույքի սրահից, իսկ Մուշեղն ասում է. «Իմ այնքան ծառայությունների, արյուն ու քրտինք թափելու, քրտինքս նետերով սրբելու վարձատրությունն ա՞յս եղավ: Բայց այս մահը երանի թե ձիու վրա ինձ հասներ»:

Թագավորի մարդիկ Մուշեղ Մամիկոնյանին մորթում են խնջույքի սեղանի առաջ:

Մուշեղը, բազմաթիվ ճակատամարտերի մասնակցած լինելով, նույնիսկ թեթև չէր վիրավորվել. նրա հարազատները չեն հավատում, որ Մուշեղը վերջնականապես սպանվել է: Գլուխը կարում են մարմնին և դնում մի աշտարակի վրա, որ արալեզները իջնեն, լիզեն կարված տեղը և կենդանացնեն Մուշեղին (ըստ հայերի հեթանոսական հավատի, արալեզները շան կերպարանքով ոգիներ էին, որոնք իբր լիզում էին պատերազմում զոհվածի վերքը և կենդանացնում): Իհարկե, Մուշեղը չի կենդանանում:

Հայոց սպարապետ դառնում է Բատ Սահառունին, իսկ Մամիկոնյան տան գլխավոր (նահապետ)՝ Վաչե Մամիկոնյանը: Այդ ժամանակ էր (376 թ.), որ հայոց կաթողիկոս դարձավ Զավենը՝ նույնպես Աղբիանոսի տոհմից (նրանից առաջ հայոց կաթողիկոս էր եղել Աղբիանոսի տոհմից Շահակ Մանազկերտցին (372—376 թթ.):

Հասկանալի էր, որ հռոմեասեր հայ նախարարները պետք է գանգատվեին Հռոմի ներկայացուցիչներին՝ ասելով, թե Հայաստանում իշխանությունն անցել է պարսկասերների ձեռքը: Հայաստանի դեպքերի մասին Կոստանդնուպոլիս լուրեր էին հաղորդում նաև երկրում վխտող հռոմեական լրտեսները:

Այդ ժամանակ պարսից Շապուհ արքան գաղտնի դեսպաններ է ուղարկում Վաղես կայսեր մոտ՝ առաջարկելով Հայաստանը բաժանել Հռոմի և Պարսկաստանի միջև: Սակայն թե՛ Հայաստանից եկող լուրերը և թե Շապուհի առաջարկը Վաղեսը լուրջ ուշադրության առնել չէր կարող, քանի որ հռոմեական կայսրության վրա հարձակվել էին վեստ-գոթեր կոչվող գերմանական հզոր ցեղերը, և Հռոմի կայսրը զորքեր էր կենտրոնացնում նրանց դեմ կռվելու համար: Հայաստանի հռոմեական զորքն էլ ետ կանչվեց: Վեստ-գոթերը գրավել էին Բալկանյան թերակղզու հյուսիսային մասը, հասել Կոստանդնուպոլիս: 378 թ. վեստ-գոթերի և Վաղես կայսրի զորքերի միջև ճակատամարտ տեղի ունեցավ Ադրիանապոլիս քաղաքի մոտ: Վաղեսը սպանվեց, նրա զորքը ջախջախվեց: 379-ին Հռոմեական կայսրության արևելյան մասի (Բյուզանդիայի) կայսր դարձավ Թեոդոսը (Թեոդոսիոսը): Իսկ Պարսկաստանում նույն տարին մեռավ Շապուհ II-րդ երկարակյաց թագավորը (թագավորել էր 70 տարի), նրա փոխարեն պարսից գահ բարձրացավ Արտաշիր II-ը:

Դրանից մոտ մեկ տարի առաջ պարսկական գերությունից Հայաստան էր վերադարձել Մանվել Մամիկոնյանը և հաստատվել Տարոնում: Քանի որ նա Մամիկոնյանների մեջ ավագն էր, Վաչեի փո-

խարեն ինքը դարձավ Մամիկոնյանների գլխավորը: Այպա առանց թագավորի հրամանի, իրեն հայտարարեց հայոց ըսպարապետ: Նրա մտքում իր եղբայր Մուշեղ Մամիկոնյանի սպանության վրեժը լուծելն էր, Բատ Սահառունուն սպանելն ու Վարազդատին գահընկեց անելը:

Մանվելը Վարազդատ թագավորին նամակներ էր գրում՝ առաջարկելով նրան հեռանալ Հայաստանից: Մանվելը հայտարարեց, որ Վարազդատն ապօրինի թագավոր է, քանի որ իբր Արշակունի չէ: Ի վերջո, պատերազմ է սկսվում Վարազդատի թագավորական զորքի և Մանվել Մամիկոնյանի զորագնդի միջև: Կարինի դաշտում տեղի է ունենում ճակատամարտ: Հաղթում է Մանվելի գունդը: Վարազդատը փախչում է: Բատ Սահառունու և նրա կողմնակից շատ նախարարների հետ Մանվել Մամիկոնյանը դաժան դատաստան է տեսնում: Նա նախ Բատի առաջ մորթել է տալիս նրա որդուն, հետո նրան էլ գլխատել է տալիս:

Իսկ Վարազդատը փախչելով գնում է Կոստանդնուպոլիս ապաստան գտնելու: Կայսրը նրան ձերբակալել է տալիս և աքսորում հեռավոր Թուլիս կղզին:

Մանվել Մամիկոնյանը դառնում է Հայաստանի փաստական ղեկավարը:

(շարունակելի)

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ

# ՀԱՐՈՒԹՅԱՆ ԱՎԵՏԻՍ

Մեծ բանաստեղծները երջանիկ են՝ նրանք ծնվում, բայց չեն մեռնում, ընդհակառակը, որքան անցնում է ժամանակը, նրանց մեծությունն այնքան ակնառու է դառնում: Դանիել Վարուժանն աշխարհի ամենամեծ բանաստեղծներից է, չընայած աշխարհն առայժմ չգիտի այդ մասին: Իսկ ինքը՛, ինքը՛, երբ Թլկունցի ձորում փորում էին աչքերն ու սիրտը խողխողում, զգո՞ւմ էր դա և այդ հանգամանքը թեթևացնո՞ւմ էր փոքր-ինչ նրա հոգեվարքի տառապանքները: Այդ հարցը միշտ ուզեցել եմ նրան տալ, բայց ոչ ծննդավայրն եմ կարողացել գնալ, ոչ էլ գերեզմանը, մանավանդ որ բանաստեղծը գերեզման էլ չունի:

Եվ ես գնում եմ նրա ուսանած քաղաքը:

Այդ հուլիսը շատ էր շոգ: Մուրադ-Ռափայելյան վարժարանի սաներն իրենց արձակուրդն անց էին կացնում Ազոլո գյուղի ամառանոցում, ուր հազիվ ազատված կաթոլիկ հայրերի խստությունից ու ուսումնական ծրագրերից, զվարճանում էին արևի, ձիթենիների, Ադրիատիկի երկնագույն ջրերի մեջ: Միայն սեբաստացի Դանիել Չպուգքյարյանը, որն արդեն ավարտել էր վարժարանը, իր խցում փակված տքնում էր «Սարսուռներ» ժողովածուի վրա:

Երբ ավարտեց, լուսնի լույսով ողողված մի գիշեր, ալիքների քնատ ճողփյունի տակ կարդաց ուսուցչին՝ նշանավոր հայագետ հայր Մկրտիչ Պոտուրյանին: Մխիթարյան միաբանը լսեց, լսեց ու հուզմունքը չկարողանալով զսպել, թաց աչքերով փաթաթվեց, համբուրեց սանին: Նա մարգարեացավ.

— Երբ ոտանավորներդ տպվին, պիտի վկայեն, թե դարուս հայ բանաստեղծներեն ամենեն մեծը բրգնիկցի մ' է...

Հետո ձեռագիր ժողովածուով հիացան մյուս միաբանները, և Դանիելը նըրանց գովասանքից համարձակություն ըստացած, խնդրեց, որ ինքնակրթությունը, ուսումը շարունակելու համար իրեն ուղարկեն Ժնև կամ Լոզան:

Վարժարանի տեսչությունը նախ մերժեց բանաստեղծին, հետո առաջարկեց մեկնել Գենտ: Բելգիական, ավելի շուտ՝ ֆլամանդական այդ փոքրիկ քաղաքը Մուրադ-Ռափայելյան վարժարանի, ընդհանրապես հայ իրականության հետ որևէ առնչություն չուներ, ուղղակի Մխիթարյան հայրերին թվում էր, թե կաթոլիկ



Բանաստեղծի ծննդավայր Բրգնիկ գյուղը:

բարբերն այնտեղ ավելի խիստ, անխաթար են: Նման որոշումից Դանիելն սկզբում անակնկալի եկավ, հետո վիրավորվեց և վրդովվեց, բայց հրաժարվել չկարողացավ: Նա համալսարանական կրթություն էր ստանալու վարժարանի կըրթաթոշակով:

Սլացող գնացքի պատուհանից նայում էր դուրս: Թաց, թխպոտ տեսարանները խորթ էին, օտարոտի, որքան նա հեռանում էր Ադրիատիկի ափերից, մոտենում Հյուսիսային ծովին, այնքան իրեն մենակ էր զգում:

Դեռ չգիտեր, թե ուր է գնում:

Հիմա այդ նույն ճանապարհով, ասես նույն գնացքը Գենտ է տանում ինձ: Իհարկե, ինձ հայտնի է, թե երբ, որտեղ, ում ձեռքով է նահատակվել նա, բայց կառամատույց ոտք դնելու պահից հայացքս անընդհատ բանաստեղծին է որոնում: Ուզում, շատ եմ ուզում նրան հանդիպել:

Դանիելը վարձեց Դեզ առ՝ Մշակույթ փողոցի 27 տան բակ նայող պատուհանով ներքնահարկի փոքրիկ սենյակը: Տանտիրուհին երկար զննում էր շիլ աչքով, բարակ բեղերով, տարօրինակ առոգանությամբ վարձակալին, ոչ մի կերպ չէր կարողանում որոշել ազգությունը: Ասենք, Դանիելը խոսելու ժամանակ չուներ, վերնաշապիկը փոխելուն պես ըշտապեց համալսարան (առանց այն էլ դասերից ուշացել էր): Պարզվեց, չի կարող ընդունելության քննություն հանձնել լատիներենից, հին հունարենից թարգմանություններ անել, ուստի՝ որպես ազատ ունկնդիր՝ նրան արձանագրեցին գրական և իմաստասիրական բաժնում: Այդքա՞նն էլ էր երջանիկ: Ծրար գնեց, շտապ տուն վերադարձավ, որ նամակ գրի, ծնողներին ուրախացնի: Արդեն պատկերացնում էր, թե Բըգնիկի սուրբ Սարգիս որմնաքանդակ եկեղեցու բակում, կիրակնօրյա պատարագից հետո հայրն ինչպես է դիտմամբ դանդաղեցնում քայլերն ու միմյանց վերջին նորույթները փոխանակող տղամարդկանց հայտնում, որ իր որդին Եվրոպայում իմաստասիրություն է ուսանում, իսկ մայրը նամակի բովանդակությունն իմանալուն պես (նա կարդալ չգիտեր) գորովանքով ու հույսով գարի է կերցնում ի՛ր մատաղի համար պահված խոյին...

Հորից զուսպ, բայց դժգոհ պատասխան եկավ: Գրիգոր աղան լավ չէր հասկացել, թե ինչ վարժարան է հաճախում որդին, նա ուզում էր ճշտել՝ Դանիելի սովորածները գյուղին պետք պիտի գա՞ն, այգի բահելուն, կալ կալսելուն պիտի օգնե՞ն: Հայտնի է՝ համալսարանական բանաստեղծը հոր դիտողությունը տեղին

գտավ, հենց հաջորդ տարի տեղափոխվեց տնտեսական գիտությունների բաժինը:

Առանձնատան դարպասը կիսաբաց է, անվստահ մտնում եմ նախասենյակ: Մութ, երկար միջանցքի երկու կողմերում փակ դռներ են: Ո՞րն է նրանը... Դուրս եմ գալիս բակ, ուր փոքրիկ, խնամված այգի կա, ծառեր, որոնք հովանի են արել գետնահարկ սենյակի միակ պատուհանը: Չեմ կարողանում դիմանալ, կռանում, նայում եմ ներս: Ուզում եմ անպայման գտնել այն սեղանը, որի վրա գրվել է «Ցեր կռունկը»՝ Վահան Թեքեյանի բառերով ասած՝ «մեր բանաստեղծության անմահ մեկ էջը»: Ինձ թվում է, եթե շղարշե վարագույրները չխանգարեն, կտեսնեմ, թե ինչպես է Դանիելը թերթում Վենետիկում հենց նոր լույս տեսած իր ժողովածուն՝ «Սարսուռները»... Այդ օրը նա երջանիկ էր, բայց միևնույն է, քիչ, չափազանց քիչ էր համարում ի՛ր արածը ի՛ր ժողովրդի համար: Ուսանողական ընկերոջը՝ Պիեռ Մաեզին, որն ամեն օր այս սենյակն էր գալիս բարձրաձայն, փոխնիփոխ Հյուգո, Վինյի կարդալու համար, նա երբեմն խնդրում էր լսել իր նոր քերթվածները, որովհետև Գենտում ոչ մի հայ ծանոթ չուներ, օրերով չէր խոսում այն լեզվով, որով բանաստեղծություն էր գրում: Ճիշտ է, Պիեռը հայերեն ոչ մի բառ չէր հասկանում, բայց ամեն անգամ համոզված պնդում էր.

— Դու մեծ բանաստեղծ ես, Դանիե՛լ...

Ի՞նչ իմանար խեղճը՝ իր գնալուց հետո այդպիսի բանաստեղծություններ գրող ընկերը մինչև լույս անքուն է մնում, որ ֆրանսերենը կատարելագործի, հրապարակային ելույթներով օտարներին հայ ժողովրդի պատմությանը, քաղաքակրթությանը ծանոթացնի...

Միջնադարյան քաղաքի նեղ, ոլոր-մոլոր փողոցներն ամեն քայլափոխի ձրգտում են համոզել, թե որքան փոքր է մեր մոլորակը: Իրո՛ք, ինչպե՞ս են այս վառ, գունեղ ցուցափեղկերին հասել այն ամենը, ինչ որսում են Հնդկական օվկիանոսում ու քաղում աֆրիկյան անտառներում: Ճապոնական, չինական, արաբական, պարսկական, կուբայական ռեստորաններն իրենց ձևավորումով, ազգային երաժշտությամբ ու կերակրատեսակներով միմյանցից խլխլում են անցորդի



Դանիել Վարուժանը ուսանող, Գենտում:

Վարուժանի հուշատախտակը Գենտի համալսարանի սրահում:

ուշադրությունը, ամեն կերպ հաճոյանում: Որքա՛ն է Դանիելն այս ցուցափեղկերին նայել ու հեռացել՝ առանց ներս մտնելու: Նա երբեմն էր միայն դասընկերների հետ զվարճանում, այն էլ էժանագին սրճարաններում: Նյութական վիճակը շատ էր կաշկանդում նրան: Մուրադ-Ռափայելյան վարժարանի տեսչությունն ընդամենը 100 ֆրանկ թոշակ էր նախատեսել, այն էլ այն պայմանով, որ ամեն ամսվա վերջին մանրամասն հաշիվ ներկայացնի: Այն գրչով, որով նա գրում էր «Ջարդը», «Կարոտի նամակը», մեկ առ մեկ գրում էր նաև, թե ինչքան է ծախսել մազերը կտրելու, օճառ, անգամ մատիտ ու ծրար գնելու համար: Քանի-քանի անգամ Դանիել Չպուգքյարյան ուսանողը քիչ մնաց դուրս մնար համալսարանից, որովհետև վանքի տեսուչը գրեթե միշտ ուշացումով էր ուղարկում ուսման վարձը: Այս ամենը ճնշում, բայց չէին հուսահատեցնում երիտասարդ բանաստեղծին, նա մեծ, շատ մեծ մխիթարություն ուներ՝ գրեթե ամեն երեկո այցի էր գնում ֆլամանդացի ազգային հերոս Հակոբ վան Արդվելդի արձանին:




Երբ առաջին անգամ տեսել է իր ժողովրդի մեծ նահատակ Արդվելդի արձանը, չի դիմացել, բացականչել է.

— Ողջո՜ւյն հերոս, իմ հեռավոր, սգավոր հայրենիքես՝ հոգնած ու դժգույն, եկած եմ նստելու քու սուրբ պատվանդանիդ...

Նա ծունր է իջել, բայց չի հառաչել անզոր ու հուսահատ, աչքերն արձանի մետաղե աչքերին հառած, ոգեշնչվել է, որ ինքն էլ մասնակցի ի՛ր Հայրենիքի անկախության պայքարին. «Դե՜ն, Արդվելդ, թող քու հիշատակդ և իմ նախնիներուս հիշատակները ոգևորեն, ուժ տան ինձի, որովհետև կկրկնեմ, մոտ է ճակատագրական օրը՝ պիտի առնեմ սուրս և թրթռացող ռունգերով նժույգս հեծնելով խթանեմ, հասնելու համար Նեմեսիսի աստվածային մարտին»:

Սրանք լոկ զեղումներ չէին, բանաստեղծի մյուս ուսանողական ընկերը՝ Ժակ Պիռենը, որ հետո ակադեմիկոս դարձավ, պատմում էր.

— Նա էությամբ միշտ Հայաստանում էր, նա Գենտ էր եկել իր Հայրենիքին նըվիրաբերվելուն նախապատրաստվելու համար...

Ճիշտ է, Դանիելը զենքը ձեռքին Սեբաստիայի լեռները ելնելու բախտ չունեցավ, բայց Արդվելդին տված երդմանը մնաց հավատարիմ: Նա անընդհատ կռվում էր իր բանաստեղծությամբ և կըռվում է մինչև հիմա «հանուն մեր հին Ցեղին»: Արևմտահայ հրապարակագիր Ահարոն Տատուրյանը դեռևս 1909 թվականին է Վարուժանին կոչել «Գրական ֆիդայի»:

Համալսարանի շենքը զույգ սյունաշարերով, բարձր պատուհաններով իսկական ուսման կաճառ է: Մի պահ վարանում եմ, հետո համարձակ բարձրանում ա՛յն աստիճաններով, որոնցով չորս տարի շարունակ բարձրացել է նա, հըրում ա՛յն դուռը, որով ամեն օր ելումուտ է արել... Տեսնես Դանիելն էլ ինձ նման առաջին անգամ նախասրահ մտնելիս կարկամե՞լ է և ունեցե՞լ այն զգացողությունը, որ թանգարան է ընկել: Ճերմակ ու կարմիր մարմարից աստիճանները ջրվեժի նման հորդում են հարկից հարկ, ողորկ սյուները բարձր, շատ բարձր պահում են մի լուսավոր, անպարփակ առաստաղ, որն ամբողջովին որմնանկարված է պատմական տեսարաններով: Հայացքս չի կտրվում կաղնեփայտե դռներից: Տեսնես ե՞րբ զանգը կտա, ո՞ր լսարանից դուրս կթռչի Դանիելը...

Ուսանողների մի խումբ թափոր ինձ տարավ ներքին բակ, այնտեղից գրադարանի մասնաշենքը, որը Գենտի ամենաբարձր կառույցներից է և երևի դրա համար կոչվում է «Գրքի աշտարակ»: Իրոք, Վարուժանն այնտեղ էր: Նրա կո-

փածո բարձրաքանդակը փակցված էր գրադարանի նախասրահում, այնպես, որ անհնար էր գիրք վերցնել ու դեմ առ դեմ չհանդիպել բանաստեղծին, չտեսնել հայերեն քանդակված տողերը.

«Ի՞նչ փույթ կյանքը մեռնող,
Երբ որ Երազը կայրի,
Երբ որ Երազն անմահ է»:

Հերթապահ գրադարանավարուհին լեփ-լեցուն պայուսակս տեսնելով երևի վախեցավ ու նախահարձակ եղավ.

— Ուշացել եք, չեմ կարող այս ժամին գիրք տալ:

— Ես չեմ եկել վերցնելու,— ասացի,— եկել եմ ձե՛զ գիրք տալու:

Ինչ որ մոտս ունեի՝ Վարուժանի հատորները, հոբելյանական հրատարակությունները, բոլորը մեկնեցի նրան: Նա նայեց անծանոթ գրերին, ծանոթ լուսանկարին, շիկնեց ու ժպտաց.

— Շնորհակալություն, խոստանում եմ պահել մեր ամենաթանկ նվերների մեջ, չհրկիզվող պահարանում:

— Պետք չէ,— խնդրեցի ես,— եթե կարելի է, բոլորն էլ գրանցեք քարտարանում, որ յեսզի ո՛ր ուսանողը ե՛րբ ուզենա, վերցնի, գոնե՛ թերթի իր ավագ դասընկերոջ գրքերը: Ձեր բանաստեղծը՝ Օգյուստ Պերիեն է ասել չէ՞.

— Ով լսում է իմ երգերը, ինձ փրկում է մահից:

Մինչ գրադարանավարուհին նշում էր գրքերի խորագրերը, ես հիշում էի Վարուժանի՝ Գենտում գրած այն հայտնի բանաստեղծությունը, որի հերոսը՝ մի հայ զորավար, պարտության է մատնում


Բանաստեղծի որդի Հայկ Վարուժանը կընոջ հետ:

Դանիել Վարուժանի՝ մեր հանճարեղ բանաստեղծի ու սուրբ նահատակի որդին՝ Հայկ Վարուժանը, Հայաստան կատարած իր այցելությունից հետո այսպես է հիշում հայրենիքում անցկացրած օրերը: Տպագրում ենք նրա խոսքը՝ իր իսկ ստորագրությամբ:

## Երևանեան հիշատակներ

Գրեթէ երկու տարի է, որ մենք այցելեցինք Հայաստան, ինչպես նաև իմ հորս արձանին, Նոր Սեբաստիայի թաղին մեջ, և մինչև այսօր կխոսինք, այդ օրերուն վրա զոր անցուցինք ձեզի հետ, մանավանդ այն օրը, որ այցելեցինք Վարուժանի անվան դպրոցը, ուր աշակերտները իրենց արտասանություններով ու երգերով հյուրասիրեցին մեզ:

Շատ վստահ եմ, որ եթե հայրս կրնար ներկա լինել, լսել ու տեսնել, շատ հըպարտ պիտի զգար, որ իր երազները ինկապես իրականություն են դարձած այս փոքր հողամասին վրա, որու համար ինքըն և մեկուկես միլիոն նահատակվեցան:

Ցիտակը, մինչև այսօր, երբ օտարներ

Համաքաղաքացիները ցնծության աղաղակներով, ծաղկեփնջերով ու դափնեպսակներով են դիմավորում նրան, ու զում են թագավոր օծել, բայց հերոսն իջնում է ճերմակ երիվարից, դափնեպսակը գլխից հանում ու միայն մի բան խնդրում. «Իմ գյո՞ւղս զիս ղրկեցեք»:

Դանիելը շատ էր սիրում Գենտը, ֆլամանդական գեղանկարչությունը, Վերհառնի բանաստեղծությունը, բայց համոզված էր, որ մարդու ծննդավայրից լավ տեղ չկա աշխարհում, չի՛ կարող լինել: Նա չգայթակղվեց եվրոպական կյանքի հմայքներով, հարմարավետությամբ, որպես սկսնակ Գենտ եկավ և մեծ բանաստեղծի համբավով լուռ, անաղմուկ հայրենի երկիրը, ծնված գյուղը վերադարձավ: Վարուժանը երազում էր գյուղական պարզ ուսուցիչ լինել և եղա՛վ, սակայն դա անգամ չափազանց մեծ բախտավորություն համարեցին և երեսունմեկ, հազիվ երեսունմեկ տարեկան հասակում...

Գրադարանի աշտարակից Գենտի համայնապատկերով զմայլվելուց հետո, հրաժեշտի պահին, երբ բոլորից աննկատ հայացքս մի անգամ էլ հանդիպեց Վարուժանի դիմաքանդակին, զարմանքով նկատեցի, որ նրա շուրթերը շարժվում են: Ու միայն ի՛նձ հասկանալի՝ հայերեն լեզվով, շշնջում է.

— Ինձ հոս-հոն մի՛ փնտրեք, ես մեր երկիրն եմ, միշտ ձեզի հետ եմ, մի՛շտ...

Նա իրավացի է՝ մեծ բանաստեղծները ծնվում, բայց չեն մեռնում իրե՛նց Հայրենիքում:

---

ինձի կըսեն, թե այդպես բան երբեք չի պատահած, իմ պատասխանը իրենց կըլլա, արդյոք ինչու մենք ունինք այդ հավիտենական կրակը ի հիշատակ մեր 1915-ի նահատակներուն համար, որ կգտնվի Հայաստանի մեջ:

Ես և իմ տիկին Ալիսը, երբեք չպիտի մոռնանք քեզ, Երևան, պահապան մեր լեզվի և պատմության՝ քու ապագա սերունդներուն համար:

Մեր միակ փափագն է, որ օր մը մեր զավակները իրենց ընտանիքներով առիթը ունենան գալ իրենց մեծ հոր արձանին, հոն՝ մայր հողին վրա:

ՆՈՐԱՅՐ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

## Սեպասար գյուղը

Շատ հեռու է քաղաքներից
Գյուղն իմ Սեպասար,
Շուրջը սարեր, սարի վրա
Նորից սար ու սար:

Ձմեռներն այդ գյուղում խիստ են,
Ցրտերը՝ երկար,
Գետակները անհանգիստ են,
Քամիները՝ չար:

Գարունը՝ կարճ,
Ամառը՝ զով,
Աշունն՝ անձրևաթաթ,
Ջորակներում առատ մորի,
Շուշան, մասրի վարդ:

Բայց այդ գյուղի,
Մարդիկ շատ են
Ծրաջան, արի,
Ցրտից երբեք
Չեն վհատվել
Դեռ ոչ մի տարի...
Հասցնում են
Վարել, ցանել,
Առատ խոտ դիզել,
Իսկ ձմռանը՝
Տաք օջախում
Գարուն երազել,
— Երազանքը մանուկների
Մեծ է սարերից,—
Մանուկները Սեպասարի
Մի օր ասին ինձ:

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ





Դեկտեմբերի 7-ի մի պահի մեջ երկինք գնացած մեր հազարավոր երեխաների հոգու ճառագայթներով ողողված Հայաստան երկիրն այլևս չի խաղաղվելու, մինչև չդառնա նրանց երազանքի ճշմարիտ Հայրենիքը։ Այս տառածքը հայոց Հայրենիք դարձնելը ամենքիս պարտքն է նաև նրանց առջև։ Ու Լիլիթ անունով այս հրեշտակը հիմա երկինքներում իր անկաշկանդ երգերն է ասում, մատները շուրթերին դրած, ճերմակ ու կապույտ քույրիկ-եղբայրիկներին։ Եվ բախտավորություն է, որ այդ աստվածային երգեցողությանը մենք էլ կարող ենք ունկնդիր լինել։



**Ես սիրում եմ իմ քաղաքը,**
**Մեր փողոցը, նրա մարդկանց,**
**Մեր դպրոցը, դասարանը,**
**Շատ եմ սիրում նրա ճամփան։**
**Առավոտյան վեր եմ կենում,**
**Հագնվում եմ ու լվացվում,**
**Պայուսակս ձեռքիս բռնած՝**
**Դեպի դպրոց եմ շտապում։**
**Ճանապարհին ամեն անգամ**
**Հանդիպում եմ մեր դասղեկին,**
**Ամաչում եմ ու կարմրում,**
**Բայց դե դպրոց եմ ես գնում։**
**Դասարանում՝ դասի ժամին,**
**Լսում եմ իմ ուսուցչուհուն,**

«Աղետյալ գոտի», **ԱՇԽԵՆ ԱՐԵՎՇԱՏՅԱՆ**, 9 տ. Երևան

Պատասխանում ամեն հարցի,
Չեմ կարմրում ու ամաչում:

●●●

Մեր պարտեզում ծաղիկներ կան
Տարբեր գույնի, տարբեր ձևի,
Ո՛նց են բուրում, ո՛նց են ժպտում
Ծաղիկները մեր պարտեզի:
Խնամում եմ ինչպես հարկն է,
Կտրում, ջրում ժամանակին,
Փխրեցնում հողը տակի՝
Չչորանան, չթառամեն:
Կազմել եմ ես մեծ ծաղկեփունջ
Տարբեր-տարբեր ծաղիկներից,
Ո՛նց են բուրում, ո՛նց են ժպտում
Զավակները մեր պարտեզի:

●●●

Խաղալիքներ ունեմ պես-պես՝
Սիրուն տիկնիկ, կոկորդիլոս,
Փափլիկ կապիկ, ամանեղեն
Ու սրբիչներ գունեղ, գոգնոց:

Ամեն անգամ քնից առաջ
Դասավորում, նոր եմ քնում,
Առավոտյան, երբ արթնանում՝
Խառնված եմ ես միշտ տեսնում:
Մի բան է ինձ մտահոգում,
Այդ ինչպես է դա կատարվում.
Մի՞թե, մի՞թե քնիս մեջ էլ
Նրանց հետ եմ ես միշտ խաղում...

●●●

Ես պապիկիս շատ եմ սիրում,
Տատիս նույնպես— մի նեղանա,
Բայց պապիկիս շատ եմ սիրում,
Տատիկ, ախր, մի նեղանա:
Տատիկ, դու միշտ դասից հետո
Իմ կողքին ես ամեն վայրկյան,
Ախր, պապիս քիչ եմ տեսնում,
Տատիկ, ախր մի նեղանա:

«Տատո», դու իմ անուշ տատիկ,
Ես քեզ կյանքում չեմ նեղացնի,
Ախր, պապիս շատ եմ սիրում,
Իսկ դու, ախր, մի նեղանա:

Իմ լավ տատիկ, անուշ «Տատո»,
Քեզ համար միշտ «հինգ» կբերեմ,
Բայց ես պապիս շատ եմ սիրում,
Քեզ էլ նույնպես, մի նեղանա:

ԼԻԼԻԹ ՍԱՔՈՅԱՆ
Լենինական

ՏԱԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ, 8 տ. Երևան



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## Տոկուն Հայաստան

Ա՜խ, ի՞նչ պատահեց, իմ փոքրիկ աշխարհ,
Ո՞վ խանգարեց քեզ, գողտրիկ լեռնաշխարհ:
Մի՞թե քիչ էին աղետները քո,
Երկրաշարժ տեսար Մասիսից ներքո:
Լոռիդ սիրելի դարձավ ողբալի,
Իսկ Գյումրին քո սեգ
Շորեր հագավ սև...
Բայց չընկճվեցիր, միայն տոկացիր,
Մեր մայր Հայաստան,
Ծաղկուն այցեստան:
...Եվ ամեն վայրկյան, երբ հիշում եմ ձեզ,
Գյումրի, Սպիտակ, գեղեցիկ Գուգարք,
Սիրտս լցվում է մանկան ճիչերով,
փլատակներով,
Սիրտս լցվում է օգնության եկած
բարեկամների հառաչանքներով:
Երբ հիշում եմ ձեզ...

ՄԱՐԻՆԵ ՍԱՀԱԿՅԱՆ
Ղափան, № 7 դպրոց, 5-րդ դաս.

## Նամակ Ձմեռ Պապիկին

Սիրելի Ձմեռ պապիկ.

Թեև այս անգամ էլ եմ քեզ անհամբեր սպասում, բայց ուրախ չեմ:

Երևի դու էլ գիտես այն ահավոր արհավիրքի մասին, որ դեկտեմբերյան մի պայծառ օր կախվեց հայ ժողովրդի գլխին: Ինչքան-ինչքան անմեղ զոհեր՝ դպրոցականներ ու երիտասարդներ մնացին փլատակների տակ: Ավերվեցին մեր շատ սիրելի քաղաքներ Լենինակա-նըն ու Կիրովականը, Սպիտակն ու Ստեփանավանը, շատ շեն ու բարետես գյուղեր:

Սիրելի Ձմեռ պապիկ.

Քեզանից այս տարի նվերներ, կոշիկ ու խաղալիքներ չեմ ուզում:

Քո մեծ տոպրակով դու բեր ամբողջ աշխարհին խաղաղություն, երջանկություն և ուրախություն, իսկ հայ ժողովրդին՝ համբերություն, վշտին դիմանալու կարողություն, հաղթահարելու կամք: Բեր մեր շինարարներին կամք ու եռանդ, ուժ ու զորություն, որպեսզի նորից շենացնեն մեր քաղաքներն ու գյուղերը՝ Սպիտակն ու Լենինականը, Կիրովականն ու Ստեփանավանը: Իսկ արհավիրքին զոհ գնացած անմեղների շիրիմներին թող հանգստություն լինի:

Մենք՝ գալիք սերունդներս, երբեք չենք մոռանա նրանց պայծառ հիշատակը:

ԱՐՓԻՆԵ ԳԱԼՍՏՅԱՆ
Հոկտեմբերյանի շրջ. գ. Արգավանդ,
4-րդ դասարան

ԽՈՐԵՆ ՊԱԼՅԱՆ

# ՄԵՐ ՉՔՆԱՂ ԳՐԱԲԱՐԸ



Ութ նկարիչների Ավետարան. 1320 թ.
Ծաղկող՝ Սարգիս Պիծակ

Մեր լեզվի նախնական վիճակի, նրա բազմաժամանակյա փոփոխությունների մասին դժվար է որոշակի բան ասել, սակայն հենվելով մեր պատմահայր Խորենացու մի շարք հավաստումների վրա, կարելի է ասել, որ այն Արամ Հայկազնից մինչև Տիգրան Մեծ և Տիգրանից մինչև Վաղարշակ եղել է կանոնավոր ու կազմավորված մի լեզու, որն իր առանձնահատկություններով, իր հարուստ բառապաշարով ու բազմազան պատկերավոր արտահայտչականությամբ մրցում էր իր սահմանակից արիականի (պարսկերենի) հետ: Մեր ասածի ամենավառ ապացույցն են բանահյուսության այն սքանչելի գոհարները, որոնք իբրև պատառիկներ մեզ են հասել դարերի հոլովույթով՝ Ագաթանգեղոսի, Փավստոս Բուզանդի և մանավանդ Մ. Խորենացու միջոցով:

Երկնէր երկին, երկնէր երկիր,
Երկնէր և ծովն ծիրանի.
Երկն ի ծովուն ունէր և զկարմրիկն եղեգնիկ,
Ընդ եղեգան փող ծուխ ելանէր,
Ընդ եղեգան փող բոց ելանէր,
Եւ ի բոցոյն վազէր խարտեաշ պատանեկիկ,
Նա հուր հեր ունէր, ապա թէ բոց ունէր մօրուս,
Եւ աչկունքն էին արեգակունք...

Հայոց աշխարհին քաջություն ու հերոսություն պարգևող Վահագն աստծո մասին հավանաբար ուրիշ երգեր ևս երգում էին մեր Գողթան երգիչները, սակայն Խորենացին այսքանով է բավարարվել:

Երվանդյան Տիգրանի որդի Վահագնից հետո Գողթան երգիչների քնարին նյութ է տվել Արտաշես երկրորդ քաջ թագավորը:

Ալանների հետ պատերազմելիս գերի է ընկնում ալանաց արքայի որդին, որին բերում են Արտաշեսի մոտ: Վերջինս մերժում է պատանուն ազատ արձակել, հրաժարվելով այն բոլոր խոստումներից, որ առաջարկում է ալանաց արքան: Այն ժամանակ իր եղբորն ազատելու խընդրանքով գետափին է մոտենում արքայադուստրը՝ գեղեցիկ Սաթենիկը, և մի մեծ

բլուրի վրա կանգնած՝ թարգմանիչների միջոցով ձայնում է Արտաշեսի բանակին.

— Քեզ ասեմ, այր քաջ Արտաշէս,
Որ յաղթեցեր քաջ ազգին ալանաց,
Եկ հաւանեաց բանից աչագեղոյ
դստերս ալանաց
Տալ զպատանին,
Զի վասն միոյ քինու ոչ է օրէն
դիւցազանց,
Զայլոց դիւցազանց զարմից բառնալ
զկենդանութիւն,
Կամ ծառայեցուցանելով ի ստրկաց
կարգի պահել,
Եւ թշնամութիւն յաւիտենական
Ի մէջ երկոցունց ազգաց քաջաց
հաստատել:

Արտաշեսը տեսնելով գեղեցիկ կույսին և լսելով նրա իմաստուն խոսքերը, սիրահարվում է և իր դայակ Սմբատի միջոցով խնամախոսներ է ուղարկում ալանաց արքայի մոտ:
Ահա և ալանաց արքայի խոսքերն ըստ Գողթան երգիչների.

Եւ ուստի՞ տացէ քաջն Արտաշէս
Հազարս ի հազարաց և բիւրս ի բիւրուց,
Ըն ք քաջազգւոյ կոյս օրիորդիս ալանաց:
Հեծաւ արի արքայն Արտաշես ի սեաւն
գեղեցիկ,
Եւ ուստի՞ տացէ քաջն Արտաշէս
Եւ անցեալ որպէս զարծուի սրաթև ընդ
գետն,
Եւ ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,
Ընկեց ի մէջք օրիորդին ալանաց,
Եւ շատ ցաւեցոյց զմէջք փափուկ
օրիորդին,
Արագ հասուցանելով ի բանակն իւր...

Արտաշեսն իր սիրո և մեծության պատշաճ հարսանյաց հանդես է կատարում, որի ժամանակ.

— Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն
Արտաշիսի,
Տեղայր մարգարիտ ի հարսնութեան
Սաթինկանն...

Ահա մեկ այլ գեղեցիկ քառատող, որը մեզ է հասել ավելի ուշ, Գր. Մագիստրոսի կողմից:

— Ո՞ տայր ինձ զծուխ ծխանի,
Եւ զառաւօտն Նաւասարդի,
զվազելն եղանց, և զվարգելն
եղջերուաց,
մեք փող հարուաք և թմբկի
հարկանէաք,
Որպես օրէն է Թագաւորաց...

Հայրենասեր թագավորի վերջին խոսքերն են սրանք, որ նա արտասանել է իր աչքերն հավիտենապես փակելուց առաջ:
Ահա այս և մի քանի այլ պատառիկների լեզուն՝ գեղարվեստական բարձր հղկվածությամբ, կտրելով երկար ու դժնդակ դարերի ճանապարհ, եկել հասել էր հինգերորդ դարի արշալույսին, երբ հայոց մեծ հանճարը՝ Մ. Մաշտոցը հրաշակերտեց մեր անմահ այբուբենը և գրեց առաջին հայատառ նախադասությունները.
«Ճանաչել զիմաստութիւն և զխրատ,
Իմանալ զբանս հանճարոյ, ընդունել զդարձուածս բանից, ի միտ առնուլ զարդարութիւն ճշմարիտ՝ և ուղղել զիրաւունս...»: Սողոմոն իմաստունի «Առակաց գրքի» առաջին տողերն են սրանք:
Մ. Մաշտոցն իբրև հայ մատենագրության լեզու՝ ընտրեց այն բարբառը, որն առավելապես հասկանալի էր բոլոր գավառներում և ծայրամասերում, մինչև Գողթն ու Սյունիք:
Կորյունը այս հարցում լռում է, սակայն նրա լռությունից պետք է եզրակացնել, որ բարբառի ընտրության հարցում Մաշտոցը առանձին դժվարություն չի ունեցել, քանի որ նա իր ողջ վարդապետական գործունեության ընթացքում ամենուրեք ջերմագին ընդունելություն էր գտնում և նրան հափշտակված ունկնդրում էին բոլորն անխտիր, քանի որ նրա ընտրած բարբառը մատչելի էր ու հեշտընկալ:
Այդ լեզուն հինգերորդ դարում մեր ժողովրդի մեծագույն հատվածի խոսակցական լեզուն էր, ուստի՝ այդ լեզվով թարգմանվեցին ու ստեղծվեցին ինչպես թարգմանական, այնպես էլ ինքնուրույն բազմաթիվ ու բազմասեռ երկասիրություններ: Առաջին գիրքը, որ թարգմանվել է հինգերորդ դարում՝ գրերի գյուտից հետո, Աստվածաշունչ մատյանն էր, որի հարազատ ու բարձրարվեստ հայերեն թարգմանությունը օտարներն անվանել են թագուհի թարգմանությանց:
Հինգերորդ դարում թարգմանվել և կամ հորինվել են նաև՝ քրիստոնյա եկեղեցվո մի շարք հոգևոր երգեր՝ եկեղեցական զա-

նազան արարողությունների ու ծեսերի համար, որոնք հետագայում կոչվեցին շարականներ: Առաջին հոգևոր երգերի հեղինակները ևս եղել են Սահակ Պարթևն ու Մ. Մաշտոցը: Այս մասին տարակուսել պետք չէ, քանի որ Կորյունը Սահակ Պարթևի մասին գրում է. «Եղեալ կատարելապէս հմուտ երգողական տառիցն հոետորական յորդաաաց յայտնաբանութեան...»:

Այժմ մի քանի խոսք հինգերորդ դարի մեր մատենագրության մասին:

Աստվածաշունչ մատյանի սքանչելի թարգմանությունից հետո, մինչև հինգերորդ դարի կեսը հայերեն են թարգմանվել բազմաթիվ երկեր, որոնցից առանձնապես պետք է նշել, այսպես կոչված՝ փրկված մատյանները՝ հունարեն կամ ասորերեն լեզուներից թարգմանված, որոնց սկզբնական բնագրերը հետագայում կորել են, և պահպանվել են նրանց ոսկեդարյան հայերեն թարգմանությունները, որոնք բնագրի արժեք ունեն:

Այդ երկերից մեկը Եվսեբիոս Կեսարացու Քրոնիկոնն է, որը մեզ է հասել հինգերորդ դարի հայերեն թարգմանությամբ:

Քրոնիկոնի հայերեն այդ միակ ձեռագիր օրինակը գտնվում է Մաշտոցի անվան մատենադարանում: Մեր պատանի ընթերցողներին հետաքրքիր կլինի իմանալ նաև, որ Քրոնիկոնը ընդգրկում է մարդկության նախապատմությունից մինչև մեր թվարկության չորրորդ դարի ընկիզքն ընկած մի մեծ ժամանակահատվածի պատմություն, որտեղ իրար են հաջորդում՝ Ասորեստանի, Բաբելոնի, Եգիպտոսի, Հրեաստանի, մարերի, պարսից թագավորությունների, մակեդոնական, սելևկյան, պտղոմեական հարստությունների, հռոմեական կայսրության և մի շարք քաղաքական այլ միավորումների ու պետությունների ժամանակագրությունը:

Թարգմանական աննախընթաց այդ հարուստ գրականությանը զուգընթաց հինգերորդ դարում ծաղկում է նաև հայ ինքնուրույն մատենագրությունը՝ Կորյուն, Ագաթանգեղոս, Փ. Բուզանդ, Եզնիկ Կողբացի: Ահա առաջին հայ հեղինակները, որոնց երկասիրություններով սկզբնավորվում է հայոց դպրությունը: Սրանց հաջորդում են հինգերորդ դարի երկրորդ կեսին հանդես եկող մեր երեք խոշոր պատմագիրները՝ Եղիշե, Մ. Խորենացի և Ղազարիկ կամ Ղազար Փարպեցի:

Դժվար է հավատալ, որ նման կարճ ժամանակի մեջ հնարավոր է ստեղծել նման հարուստ ու բարձրարժեք մատենագրություն, որն արդեն վաղուց ի վեր դարձել է համամարդկային մշակույթի կարևորագույն մասը: Այն իր վրա կրում է մեր վիպասանական անգիր գրականության լեզվական ու ոճական հատկանիշերն ու ավանդույթները: Զարմանալի է լեզվի գեղեցկությունն ու հմայքը, որ փայլում է հինգերորդ դարի մեր դասական մատենագրության մեջ. առկա են այն բոլոր հատկանիշները, որ պահանջվում է դասական լեզվից՝ կանոնավորություն, պարզություն, վայելչություն: Քերականությունը իր կայուն տրամաբանական կանոններով ճոխ է ու բազմաձև: Ունի հարուստ բառապաշար՝ ճոխ հոմանիշերով ու գեղեցիկ զուգաբանություններով, բայերի բազմապիսի խնդրառություններով ու նախդիրների առատությամբ՝ կանոնավոր համաձայնությամբ:

Դասական այդ լեզուն, որը մենք այսօր անվանում ենք գրաբար, հինգերորդ դարում եղել է մեր ժողովրդի խոսակցական լեզուն և կոչվել է հայոց լեզու, հայերեն լեզու կամ պարզապես հայերեն:

Հետագայում, երբ բնական զարգացումով այդ լեզուն փոփոխության ենթարկվեց և հեռացավ իր սկզբնական վիճակից, տարբերություն առաջացավ կենդանի խոսակցական լեզվի և ձեռագիր մատյանների լեզվի միջև, այս վերջին՝ հին լեզուն անվանեցին գրաբար:

Աշխարհում դժվար է գտնել մի լեզու, որի ձայնական դրությունը անփոփոխ մնացած լինի, հակառակ դեպքում չէին ձևավորվի մյուս լեզուները: Անփոփոխ մնում են այն լեզուները, որոնք դադարում են խոսակցական լեզու լինելուց:

Խոսակցական լեզուն միշտ ենթակա է փոփոխվելու, բայց այբուբենը պետք է մնա անփոփոխ:

Մեկ օրինակ ուզում ենք վկայակոչել մեր պատմությունից՝ ցույց տալու համար մեր նախնյաց անվերապահ երկյուղած սերն ու պաշտամունքը մեր մեծագույն հանճարի հանդեպ:

Միջին դարերում Խաչակրաց արշավանքների թիրախ դարձավ նաև Կիլիկյան Հայաստանը: Անցնելով Կիլիկիայով, նրանք իրենց ավերածություններին իբրև հատուցում մեզ նվեր տվեցին երկու տառ՝

օ և փ:

Մեր նախնիք սրբապղծություն համարեցին դրանք մուծել մաշտոցյան այբուբենի մեջ և շուրջ 500 տարի չօգտագործեցին:

Այժմ տեսնենք, թե ինչ է նշանակում գրաբար:

**«Գրաբար»** բառի կազմությունն է Գիրաբար, աբար ածանցը նշանակում է նման, պես: Ուստի «գրաբար» նշանակում է գրքի նման, գրքում գրված լեզու, և ոչ թե կենդանի խոսակցական լեզու:

Այս բառը հավանաբար առաջացել է միջին դարերում, երբ խոսակցական լեզուն հեռացել է իր սկզբնական վիճակից:

Հետագայում «գրաբար» բառը դառնում է սովորական, և դրանով անվանվում է հին, Մաշտոցի լեզուն:

Եվրոպացի հայագետները և ընդհանրապես օտարները գործածում են հին հայերեն կամ դասական հայերեն ձևերը:

Հայտնի է, որ 5—19-րդ դարի կեսերը, մեր ողջ մատենագրությունը հիմնականում գրված է գրաբարով:

Սիրելի պատանիներ, երևի ձեզանից շատ քչերը գիտեն և ծանոթ են մեր այդ լեզվի՝ գրաբարի ծովածավալ հարստություններին, նրա քաղցրահնչուն բառերի անսահման գեղեցկությանը: Գրաբարը մեռած լեզուների մեջ ամենակենսունակն է: Այն հայոց լեզվի հարստության անսպառ շտեմարանն է՝ բոլոր ժամանակների համար:

Գրաբարի հիմնական բառապաշարը առկա է մեր արդի գրական լեզվի երկու ճյուղերում:

Հաճախ ոմանց թվում է, որ գրաբարը շատ բարդ ու խրթին լեզու է: Այդպես չէ, իհարկե:

Սիրելի պատանիներ, Գրաբարը մեր հարստությունն է, մեր հպարտությունը:

Աշխարհում հազվագյուտ են այն ազգերը, որոնց բազմադարյան հարուստ մշակույթի գրական կոթողները հորինված լինեն մի լեզվով, որն ամբողջությամբ մոտ է իրենց այսօրվա խոսակցական լեզվին, և սակայն այդ ժողովրդի մեծագույն մասի համար այդ սքանչելի լեզուն «օտար լեզու» է:

Պետք է ծանոթանալ, տիրապետել այդ լեզուն, ավելի մոտիկից հաղորդակից լինելու համար մեր հերոսական պատմության էջերին:

Գրաբարի իմացությունը մեծապես կնպաստի մայրենի լեզուն ավելի լավ տիրապետելուն, գեղեցիկ արտահայտվելուն: Այն կօգնի ավելի լավ ճանաչել իրքներս մեզ, մեր ժողովրդի հոգեկան ու բարոյական հատկանիշները:

Գրաբարի ուսումնասիրությունը մեծապես կօգնի նաև ճանաչելու մեր հարևան ժողովուրդների պատմությունը՝ նրանց սովորույթներն ու կենցաղավարությունը:

Մեր մատենագիրների երկերում խիստ արժեքավոր տեղեկություններ են պահպանվել Աղվանից, Վրաց, Պարսից և Արխազաց աշխարհների ու նրանցում ապրող ժողովուրդների մասին:

Մեր մատենագիրները հետաքրքիր էջեր են թողել նաև Հայաստանն ասպատակող բազմաթիվ ցեղերի ու նվաճողների՝ արաբների, սելջուկների, թուրքթաթարների, մոնղոլների և ուրիշների կենցաղի, սովորությունների, նրանց արտաքինի ու խոսվածքի մասին: Ահա մի քանի տող 13-րդ դարի պատմիչ Կիրակոս Գանձակեցու հայոց պատմությունից.

«Վասն ցուցման կերպարանաց թաթարին...».

— Էին տեսլեամբ կերպարանաց դժոխատես և ահագնալոր՝ մօրուս ոչ ունելով, բայց ոմանց սակաւ թուով մազս ունելով ի շուրջն կամ ի կլափն, ակն նեղ և արագատես, ձայնն նուրբ և սուր...

— Ուտէին զամենայն կենդանիս, զըսուրբս և զանսուրբս, և զմիս ձիոյ առաւել մեծարէին...

— Գողութեան ատելիք էին, մինչ զի չարաչար մահուամբ սպանանէին»:

Կարծում ենք, որ հիշյալ տողերը բավական մատչելի են և ուշադիր ընթերցելիս կարելի է հասկանալ:

Ժամանակն է, որ մեր չքնաղ գրաբարը դասավանդվի մեր դպրոցներում՝ գրականության, անգիր բանահյուսության պատառիկների մատուցմանը զուգահեռ, որպեսզի մատչելի լինի բոլորին և ոչ թե բանասիրական և կամ պատմության ֆակուլտետ ընդունվող ու սովորողներին միայն:

Այս մասին պետք է մտածեն պետական մարմինները և դպրոցական ուսուցման ծրագրերի վերակառուցման այս բարեպատեհ ժամանակներում կյանքի կոչեն վաղուց ի վեր մոռացության տրված այս հույժ կարևոր խնդիրը:

Գրաբարը պետք է ուսուցանվի մեր դպրոցներում: Սպասենք և հուսանք:

# ՍՈՒՐԱԴՅՈՒՄ ՀԵՔԻԱԹ-ԶՐՈՒՅՑՆԵՐ

ՊԵՏՐՈՍ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Նկարները՝ ՄԱՐԻՆԱ ՎԱՂԱՐՇՅԱՆԻ

## Հեքիաթ քթի, լեզվի, ականջների և աչքերի մասին

Մի անգամ քիթը, լեզուն, ականջները ու աչքերը որոշեցին առանձին ապրել:

Ու լքելով մարդուն՝ ճամփա ընկան: Գնացին, գնացին հասան մի մեծ թագավորություն: Եվ քանի որ ապրել էր պետք, սկսեցին աշխատանք փնտրել: Ականջները գործ գտան պալատում: Նրանք իրենց լսածները հաղորդում էին թագավորին, բայց շատ անգամ լսածը բոլորովին չէր համապատասխանում ճշմարտությանը, և թագավորը հրամայեց վռնդել նրանց, ասելով, որ ավելի լավ է մեկ անգամ տեսնել, քան տասն անգամ լսել: Ականջների փոխարեն գործի անցան աչքերը, բայց թագավորը նրանց էլ



վռնդեց, քանի որ սրանք էլ լսելու ընդունակ չէին և միայն տեսածով էին բավարարվում: Քիթը՝ հեռու լսողությունից և տեսողությունից, հարկ էր համարում բոլորի գործին խառնվել: Իսկ լեզուն մոլորվել-մնացել էր, ոչ ոք չէր հասկանում նրան. բլբլում, հա բլբլում էր: Եվ մոլորված, նրանք ետ դարձան : Իսկ մարդը քանի որ գլուխ ուներ ուսերին ներեց նրանց ու ասաց.

— Քիթ ու լեզու ընկերներ,
Եվ դուք աչքեր, ականջներ,
Լավ իմացեք այսուհետ
Ճամփա ընկեք գլխի հետ:

## Ուրիշի շուքի տակ

Մի դատավոր ծույլ ու անբան որդի ուներ:

— Է,— ասում էր որդին, ինչ աշխատանք, ինչ բան, բախտավոր աստղի տակ եմ ծնվել, դատավորի որդի եմ, հորս հովանու տակ կապրեմ:

Մի օր դատավորն ու իր որդին տեսան, թե ինչպես այգեպանը դարավոր կաղնու ծառի տակից մի շիվ կտրեց:

— Ինչո՞ւ պոկեցիր էդ մատղաշ շիվը,— հարցրեց դատավորը,— թող իր համար մեծանար:

Իսկ այգեպանը շիվը տարավ տնկեց մի բացատում ու ասաց.

— Թող անձրև թափվի գլխին, թող դիմանա կարկտի ծեծին, թող իմանա, թե ինչ բան է հողմն ու փոթորիկը, թե որ էս բոլորին դիմացավ, տեր դատավոր, օր ու արև կտեսնի, թե չէ ուրիշի շուքի տակ շիվը կաղնի չի դառնա:

Հայր ու որդի նայեցին այգեպանին ու լուռ հեռացան:



## Ամենաբարձր տիտղոսը

Մի թագավորությունում այնքան շատ էին տիտղոսավորները, որ դրանք թըվարկելուց մոռանում էին գործի մասին:

Մի օր խորամանկ մի հովիվ անգիր սովորելով բոլոր տիտղոսները, գնաց պալատ ու դիմեց թագավորին.

— Ո՜վ թագավորների թագավոր, ո՜վ պարգև վերին, դու՝ աստղ աստղերի, դու՝ պայծառ ժպիտի շքանշանակիր, դու՝ հայր հայրերի, դու՝ սեր ազգերի, դու՝ աղբյուր լույսի, դու՝ ջուր կենարար, դու՝ հող բարեբեր, դու՝ հերոս հերոսների, դու՝ գլուխ ոտավորների, դու՝ երգ երգերի, դու՝ գիտուն գիտությունների, դու՝ խորհուրդ խորհին, դու՝ օազիս անապատի...— մի փոքր շունչ քաշելուց հետո հովիվը շարունակեց.

— Դու՝ թագավոր անթագների, դու...

— Վերջ տուր,— ճչաց համբերությունն սպառած թագավորը,— գործից խոսիր, գործի՛ց:

Բայց հովիվը ոգևորված շարունակեց.

— Իսկ ես՝ հովիվը խոզերի, հովիվը ավանակների...

— Գործի՛ց խոսիր,— ճչաց թագավորը և սիրտը բռնելով ուշագնաց վայր ընկավ, իսկ հովիվը դեռ շարունակում էր...

— Ես՝ հովիվը սագերի, ես՝ հովիվը ոչխարների...

Երբ թագավորը ուշքի եկավ, հրաման արձակեց. «Իմ թագավորության մեջ ամեն ոք թող գործի՛ց խոսի, խոսքը գործ դարձնի: Գործն է ամենաբարձր տիտղոսը»:

## Գահաժառանգը

Թագավորն ուներ երկու որդի: Նա դժվարանում էր որոշել, թե որդիներից ով է ժառանգելու իր գահը: Եվ վճռեց փորձել նրանց:

Հրամայեց կանչել մի քանի գյուղացիների: Երբ գյուղացիները ներկայացան, թագավորն ասաց.

— Զավակներս, այս մարդիկ կարիքի մեջ են, պետք է օգնել նրանց:

— Շատ լավ,— ասաց որդիներից մեկը և սկսեց ոսկի բաժանել: Իսկ մյուս որդին էլ թե.

— Ես նրանց գութան կնվիրեմ, ոսկին, որ իմ եղբայրը այդպես շռայլորեն բաժանում է, մի օր կարող է վերջանալ, իսկ գութանի գործը հողն է, անվերջ գոհացնող հողը, բոլոր նվերներից ամենաթանկը:

Շատ ուրախացավ ծեր թագավորը և գահաժառանգ հայտարարեց գութան նվիրող որդուն:



## Կույրը

Փառամոլ արքան իր շքախմբի հետ զբոսնում էր քաղաքում, երբ ճամփան

կտրեց մի կույր ծերունի:
— Ով թշվառական,— բղավեց արքան,— մի կողմ քաշվիր:
— Ես կույր եմ, ոչինչ չեմ տեսնում:
— Ինչպե՞ս ես համարձակվում չտեսնել արքային:
— Տեր արքա, փառքից կուրացածն ավելի կույր է, քան քնությունից,— պատասխանեց ծերունին և շարունակեց իր ճանապարհը:



## Արհեստ սովորողը

Վաճառականը ծույլ ու անբան որդուն տարավ արհեստավորի մոտ ու ասաց.
— Ուզում եմ որդիս արհեստ սովորի:
— Լավ,— ասաց արհեստավորն ու ու անցավ գործի, ինչ հնար ուներ՝ թափեց, օրեր, շաբաթներ անքուն մնաց, բայց ծույլ անբանին արհեստ սովորեցնել չհաջողվեց: Վաճառականը բարկացավ և հրամայեց արհեստավորին բանտ նետել:
— Սպասիր,— հառաչեց արհեստավորը,— թույլ տուր վերջին անգամ տնամերձս ջրեմ և առվի ջուրը շուռ տվեց դեպի ապառաժ քարերը:
— Էդ ի՞նչ ես անում,— զարմացավ վաճառականը,— այնտեղ ջրի, որտեղ հող կա, բերքը հողից է, հողից:
— Միշտ ես ասում, բերքը հողից է, իսկ արհեստ սովորելն էլ տեղից է, տեղից,— պատասխանեց արհեստավորը:

# ԵՐԵԽԱՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Երբ խմբագրության երկու աշխատակիցներով գնացինք Երևանի № 181 դպրոցի դասվար Աննա Շահնազարյանի դասարանի թատերականացված ցերեկույթին մասնակցելու, մտածում էինք, որ շարքային մի ցերեկույթ է լինելու: Հուրախություն մեզ՝ սխալվեցինք: Դա մի յուրօրինակ միջոցառում էր, չափազանց օգտակար և ուսանելի ոչ միայն դպրոցականների, այլև ուսուցիչների, հրավիրվածների ու ծնողների համար: Թե ինչպիսի ոգևորությամբ, նվիրումով էին ներկայացնում գեղեցիկ մտահղացումներով միմյանց շղթայած հանրահայտ հեքիաթների բեմականացումները, սպասելիքներից վեր էր: Հարկ է նշել, որ աղետի վայրերից ժամանակավորապես այդ դպրոցում սովորող երեխաները նույնպես ընդգրկված էին առաջատար դերակատարների շարքում: Անչափ հուզիչ էր «Չարի վերջի» բեմականացումը, ուր շեշտված կերպով զգացվում էր մեր հանրապետության տիրող ներկա իրավիճակի շունչը, մեր ժողովրդի այսօրը: Այժմեականացված այս բեմադրությունը, ընդհանրապես, մեծ ընդունելություն գտավ: Բայց այս ամենն արդյոք բավակա՞ն էր, որ հոդվածի առիթ դառնար, հոդված, որ փոքրիշատե ընդգրկեր նաև ուսուցչուհի Աննայի ոչ շատ հարուստ մանկավարժական գործունեությունը:

Գրելուց առաջ մտորում էի, որ մեր պատանի ընթերցողների մեջ այն միտքը կառաջանա, թե ինչո՞ւ, ասենք, ոչ թե իրենց ուսուցչի կամ ուսուցչուհու մասին են գրել, այլ Աննա Շահնազարյանի, չէ՞ որ իրենց դասատուն էլ լավն է, բարի, նվիրված է երեխաներին... Անշուշտ տեղին հարցադրում է: Բայց Աննայի մասին որոշեցի գրել միայն մի պատճառով. այն է՝ երբ ցերեկույթն ավարտվեց, Լուսինե Բալայանն ասաց. «Ես ուզում եմ, որ ընկեր Շահնազարյանը մինչև տասներորդն



ավարտելը ինձ դասավանդի»: Իսկ երբ նրան բացատրեցի, որ երրորդն ավարտելուց հետո որոշակի փոխվում է դասավանդման կարգը, Լուսինեն հասկացավ ու տխրեց: Հուզիչ, բայց քաղցր տխրություն էր դա:

— Դե որ այդպես է, մինչև դպրոցն ավարտելն էլ թող մեր դասղեկը նա լինի,— և արած հայտնագործությունը դեմքի տխրությունը փոքր-ինչ փոխեց թույլ խաղացող ժպիտ-ցանկության:

Շատ է, թե քիչ է այսքանը՝ չգիտեմ, բայց, կարծում եմ, արժե թեկուզ Լուսինեի համար գրել Աննա Ծահնազարյանի մասին, իսկ երբ շփվեցի, ծանոթացա դպրոցական կյանքին և ուսումնառությանը վերաբերվող նրա դիտարկումներին, հասկացա, որ այսօր մեր դպրոցներին հարկավոր են հատկապես նման սկըզբունքային մտածելակերպ ունեցող և պայքարող մանկավարժներ: Որպես ասածիս ապացույց՝ ուզում եմ ներկայացնել ձեզ հատվածներ մեր զրույցի սղագրությունից:

Աննա Ծահնազարյանը գերազանց ավարտել է Երևանի Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի մանկավարժության և տարրական ուսուցման մեթոդիկայի ֆակուլտետը:

— Իմ ամենամեծ երազանքը տարիներ շարունակ եղել է մանկավարժ դառնալը:— Եվ ահա վեց տարի է, ինչ նա աշխատում է Երևանի № 181 դպրոցում: Այստեղից է սկսվել նրա մանկավարժական գործունեությունը:

— Ընդհանրապես մեր դպրոցներում ուսուցիչը դասարանում գրկված է ստեղծագործական աշխատանքից, կառչած է գրքերից և ծրագրերից, սակայն ես ինչ-որ ձևով փորձում եմ հաղթահարել դա: Ճիշտ է, իմ երեխաները տարրական դասարանի աշակերտներ են,— ասում է ու-

ուցչուհին,— բայց ես նրանց վերաբերվում եմ ինչպես մեծահասակների: Հաղորդակից եմ դարձնում այն ամենին, ինչ կատարվում է շրջապատում: Չէ՞ որ երեխան ազգի մասնիկն է և պետք է դեռևս փոքրուց մասնակից լինի և՛ մեր ուրախություններին, և՛ տխրությանը: Արցախյան դեպքերի ծավալման ընթացքում ես երեխաներին առաջարկեցի «մենք» անձնական դերանունով նախադասություն կազմել, որտեղ դերանունը ստորոգյալի պաշտոն կատարի: Երեխաներից մեկն ասաց՝ «Ղարաբաղն մերն է»: Երեխաների հետ ես հանգիստ եմ զգում, նույնիսկ արձակուրդի օրերին, երբ փողոցում և հասարակական տրանսպորտում հանդիպում եմ երեխաներին, ձգտում եմ որևէ պատըրվակ գտնել նրանց հետ զրուցելու համար: Գուցե դա մանկավարժական հիվանդությո՞ւն է, չգիտեմ:

— Իսկ ի՞նչ կարող եք ասել դասագըրքերի մասին:

— Դասագրքերը գրված են միջին մակարդակի համար, և կարծես հաշվի չի առնված, որ կան և՛ թույլ, և՛ ուժեղ ընդունակության տեր երեխաներ: Եվ վերջապես մինչև ե՞րբ պետք է այս հին ու քրքրված դասագրքերով պարապենք, ինչո՞ւ գրախանութներում դասագրքեր չեն վաճառվում և ի՞նչ է մտածում «Լույս» հրատարակչությունը:

Իսկապես, մի՞թե խնայելու համար ուրիշ բնագավառներ չկան, և մի՞թե հենց երեխաների դասագրքերի հաշվին պետք է դա արվի: Եթե նույնիսկ ծամոնը պիտի շքեղ փաթեթավորում ունենա, որ հրապուրի երեխաներին, ապա ինչո՞ւ երեխաներին մայրենի լեզվին կապող գիրքը տարեցտարի ձեռքից-ձեռք փոխանցվելով լինի քրքրված, խզբզված և ճարպոտ մատնահետքերով: Վստա՞հ ենք, որ այսօր տնտեսված հազարները վաղը միլիոնների վնաս չեն բերելու: Հայաստանում դեռևս սրտացավ վերաբերմունք չկա հայոց լեզվի նկատմամբ: Օրինակ՝ մշտապես վաճառվում են ռուսերեն տառեր ու մաթեմատիկայի թվանշաններ՝ պատրաստված պլաստմասսայից, գեղեցիկ ու հաճելի, իսկ հայերեն տառեր չըկան ու չկան:

Կարևոր նշանակություն եմ տալիս դասընթացի ժամանակ խաղերին, որի ճիշտ օգտագործումից բարձրանում է նաև ուսուցման արդյունավետությունը: Խաղի ընթացքում տարրական դասարանի երեխան իրեն զգում է հարազատ տարերքի մեջ, ոգևորվում է, կենտրոնանում, ակտիվանում: Հաճախ փորձում եմ խաղեր ստեղծել ինքս, օգտագործում եմ ուսուցանող, ամրակայող, ստուգիչ, ամփոփիչ խաղեր: Հատկապես լավ արդյունք են տալիս մրցույթ-խաղերը, երբ դասի ընթացքում պայքար է ծավալվում հակառակորդ խմբերի միջև, և այդ դեպքում յուրաքանչյուր աշակերտ պայքարում է ավելի շատ միավորներ բերել իր խմբին: Իսկ դա հաջողվում է, եթե նա լավ է յուրացրել թեման և անցած նյութերը, քանզի աշխատում եմ խաղերի ընթացքում նոր նյութը կապել անցած նյութերի հետ: Իմ փորձից ելնելով՝ համոզվել եմ, որ թույլ սովորող աշակերտների համար ուսուցչի հորդորներից, ծնողների ամենօրյա կշտամբանքներից և գնահատականներից ավելի համոզիչ է դասընկերների ջերմ հավանությունը կամ կշտամբանքին արժանանալը: Միայն այն միտքը, որ ոչ մի խումբ չի ցանկանա իրեն ընդգրկել խաղի մեջ, աշակերտին հարկադրում է սովորել նյութը, կրկնել անցածը: Նման խաղեր հաճախակի կազմակերպում եմ հայոց լեզվից, մաթեմատիկայից և հայրենի բնությունից:

Տարիները իրենցը կանեն, մի բան է պարզ, որ մանկավարժի բարդ ու հետաքըրքիր աշխատանքը օգնեց բազում թելերով կապվելու երեխաների պարզ, անմիջական ու հետաքրքիր աշխարհին:

Երիտասարդ ուսուցչուհին ամեն կերպ ձգտում է քըլորովին նոր կամ նորացված մեթոդներ գտնել տարրական դասարանի իր երեխաների հերթական դասն ուսուցանելու համար: Այդ պատճառով էր երևի, որ Աննան ասում է, թե ժամանակակից մանկավարժը նաև պետք է ռոմանտիկ լինի: Անշուշտ, ճիշտ և կարևոր հանգամանք է, բայց դժբախտաբար դըպրոցը (մեր դպրոցները) չունի այն հնարավորությունները, որ մանկավարժը կարողանա իրականացնել երևակայածը, ստիպված չլինի կցկտուր պայմաններին հարմարեցնել թեմաները մատուցելու նորացված, երեխային ձգող գեղեցիկ գյուտերը: Ինչևէ, բազում հոգսեր կան դըպրոցներում, բայց լավն այն է, որ այդ հոգսերն իրենց ուսերին կրող, այդ «հոգսերի ձմեռը» ջերմացնող երիտասարդ մանկավարժներ կան...

ԺԱՍՄԵՆԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ

«Խոտակերաց սուրբ Նշան» ձեռագրի կազմը, 1300 թ. (հատված)

ԱՇՈՏ ՔԵՐՈԲՅԱՆ

# ՈՍԿԵՐՉՈՒԹՅՈՒՆ

Ոսկերչությունը նույնպես հնագույն արհեստներից մեկն է, ինչպես երկաթագործությունը: Մարդն սկսել է ոսկին օգտագործել բրոնզից առաջ, պղնձի հետ միասին: Կիրովականում 1948 թվականին բացված դամբարանում, որը պատկանում է մեր թվարկությունից առաջ երկրորդ հազարամյակի կեսերին, գտնվել է ոսկե թաս, վրան դրվագված վեց առյուծ: Կարմիր բլուրում և այլուր կատարված պեղումների ժամանակ նույնպես գտնվել են ոսկյա իրեր ու զարդեր, որոնց տարիքը երեք հազարից անցնում է: Այդ զարդերըն ու իրերը առանձնանում են նուրբ դրվագումներով, բուսական ու կենդանական բնույթի նախշերով: Ագաթանգեղոսի «Պատմության» մեջ հիշվում է Անահիտ աստվածուհու մարդահասակ ոսկեձույլ արձանների մասին, որոնք մեր թվարկությունից առաջ են պատրաստվել: Ոսկուց, արծաթից պատրաստված թասերը, գավաթներն ու ամեն տեսակի զարդերը սովորական էին Արտաշիսյան և Արշակունյան արքունիքներում, վերնախավի կենցաղում: Ինչպես երևում է Բակուր Երկրորդի՝ մեզ հասած արծաթե թասից, դրանք զարդարված էին լինում բազմաբնույթ դրվագումներով, իսկ ոսկյա զարդերը սովորաբար ընդելուզված էին լինում մարգարիտներով ու թանկարժեք քարերով: Դա երևում է նաև Տիգրան երկրորդի դրամների վրա հանդիպող թագի պատկերից:

9—10-րդ դարերում ոսկերչության զար-

գացումը նոր թափ է ստանում: Դրա համար ստեղծվել էին նպաստավոր պայմաններ: Արհեստների, առևտրի և քաղաքային կյանքի զարգացման հետ ընդանկչության վերնախավի կենցաղ թափանցեցին պերճանքի առարկաները: Ոսկեղեն ու արծաթեղեն իրերով նրանք զարդարում էին իրենց պալատներն ու դղյակները, կահույքը, կարասին, իրենց զգեստներն ու ձիասարքերը: Եկեղեցին անգամ այլևս չէր բավարարվում համեստ կահկարասիով: Եկեղեցական ըսպասքները՝ մասունքի տուփերը, գրքերի կազմերը, խաչերը, սկիհները և այլ իրեր արդեն մեծամասամբ պատրաստվում էին ոսկուց ու արծաթից, մեծահարուստների նվիրատվությունները էլ միմյանց ոսկեղեն ու արծաթեղեն իրեր էին: Այստեղ արժե հիշատակել Սյունյաց Գրիգոր Սուփան իշխանին, որն 901 թվականին Մաքենոցաց վանքին նվիրել է թանկարժեք շատ իրեր և նշել է վիմական տարեգրերում՝ «Անխնայաբար զարդարեցի պատվական սպասիվք»: Իսկ հայոց Կատրանիդա թագուհին Անիի Մայր տաճարը՝ Կաթողիկեն զարդարել է ճոխ դիպակներով, որոնք ոսկեթել ու ոսկեկար էին, արծաթեղեն ու ոսկեղեն անոթներով և «բազմապայծառ լուսատու անոթաց վայելչությամբ»:

Ոսկերչության վաղեմությունը հաստատվում է իրեր ու զարդեր պատրաստելու այն բազմապիսի եղանակներով, որոնք մինչև այսօր էլ կիրառելի են: Միայն ձուլածո իրեր պատրաստելու համար կիրառել են չորս եղանակ. կոշտ կաղապարով, ճկուն կաղապարներով, որոնք կավե, ավազե կամ հողե էին, մոմե մոդելով, երբ պահպանվում էր կաղապարը ու նույն եղանակով՝ առանց կաղապարը պահպանելու: Իսկ կռելու եղանակով ոսկյա զարդեր պատրաստելը նույնն էր, ինչ պղնձագործության մեջ: Սակայն այստեղ արժե նշել մի կարևոր, զուտ Հայաստանի արհեստավորներին հատուկ մանրամասն: Հայ արհեստավորները սերընդեսերունդ պահպանել ու մինչև մեր օրերն են հասցրել իրերի ու անոթների զանազան մասերն իրար կպցնելու հին ու պարզ մի եղանակ՝ ճրագի բոցի օգտագործումը: Ճրագի բոցը թույլ է, և եթե իրը բռնես նրա վրա՝ կմրոտվի: Դրանից խուսափելու համար մետաղե բարակ խողովակով փչում էին ճրագի բոցի վրա՝ առաջացնելով ուժեղ հոսանք, որի շնորհիվ բոցը բորբոքվելով, ստանում էր կապույտ գույն, բարձրանում էր նրա ջերմաստիճանը: Բացի այդ, փչելով կարելի էր բոցը ուղղել ուզածդ տեղը, ինչպես այդ արվում է այսօր հատուկ սարքի՝ բոցամուղի օգնությամբ: Այսօր էլ ոսկերիչը փոքր իրեր պատրաստելու համար կիրառում է այդ հին եղանակը:

Դրվագման տեխնիկան նույնպես հին է, և դրա մասին խոսել ենք պղնձագործության արհեստի հոդվածում: Ոսկերիչների այժմյան դրվագումը, սակայն, տարբերվում է պղնձագործի դրվագումից նրանով, որ ոսկու հաճելի տեսքը չփոփոխելու համար մակերեսին ձյութ են քսում և նոր միայն հարվածում: Ըստ երևույթին այս ձևը նույնպես հնուց է գալիս: Համեմատյնեպս գտնված շատ իրեր, որոնք ունեն հարուստ դրվագանախշեր, իրենց տեսքով հուշում են, որ այդպես է եղել դրվագումը: Դրվագված էին լինում հատկապես ոսկյա գահույքները, փայտե արծաթապատ խաչերը, գրքերի կազմերը: Ոսկերչության արվեստի բացառիկ նմուշներից է Էջմիածնի վանքի թանգարանում պահվող դրվագված ու ոսկեջրած պահարանը, որ պատրաստել են Պռոշ իշխանի թոռան պատվերով:

Նրա բարձրությունը 42 սմ է, լայնքը՝ 26,5 սմ: Ունի երկու դուռ, որոնք բացվում են կամարի տակ: Պահարանը քանդակներով զարդարված է դրսից, ներսից ու կողերից: Սա և կիլիկյան ոսկերչության շատ ու շատ նմուշներ այդ արվեստի գլուխգործոցներ են և հայ ոսկերչությունը պերճանքի սպասարկումից հասցնում են արվեստի սպասարկուի:

Դրոշմելու եղանակով նույնպես շատ իրեր ու զարդեր են հասել մեզ, հատկապես՝ Անիի ու Դվինի պեղումներից: Այս եղանակի առանձնահատկությունն այն էր, որ քանդակազարդ ձողը դրվում էր ոսկյա կամ արծաթյա թիթեղի վրա: Թիթեղի մյուս երեսին դրվում էր բոլորովին հարթ մի ձող, որ կոչվում է խափշակ: Խափշակին հարվածում էին մուրճով, և քանդակազարդ ձողի՝ խշտակի նախշերը արտատպվում էին թիթեղի վրա:

Շատ տարածված էր (այսօր էլ) հյուսելու եղանակը: Ոսկերիչը նախ պետք է ոսկուց բարակ թելեր ստանար: Դրա համար օգտագործում էր տախտակը, որի վրա տարբեր տրամաչափի անցքեր էին բացված: Տաքացնում էին ոսկին, անցկացնում սկզբից լայն անցքով, մյուս

ծայրից ունելիով քաշում էին, ու ոսկու ձողը բարակում էր: Հետո նույն բանը կրկնում էին մյուս անցքով այնքան, մինչև ստանային մազաչափ բարակության թելեր: Այդ եղանակը այսօր էլ կիրառում են արծաթագործները: Մետաղի կամ փայտե այդ տախտակը կոչվում էր կորզան, որը, ըստ Հայկազյան բառարանի, հնուց եկող բառ է: Ստացված թելը վարպետը մի տակ կամ, ավելի հաճախ՝ կրկնակի ոլորած հյուսում էր ու դրանով պատրաստում հյուսվածքե իրեր ու զարդեր: Այսպիսի թելերով նաև դիպակներ էին գործում: Այս թելերից նաև գալարուն զարդեր էին պատրաստում: Ոսկե թելերով հյուսածո ու ցանցկեն զարդերի հարուստ հավաքածու է ստեղծվել Դվինի ու Անիի պեղումներից: Այս եղանակի հետ հաճախ զուգակցվում էր նաև հատիկներով զարդարելը: Հատիկները պատրաստում էին առանձին, ապա կրակի օգնությամբ կպցնում պատրաստվող իրի վրա: Որպես զոդիչ նյութ հաճախ օգտագործում էին բորակը: Իսկ ոսկու հատիկներ ստանում էին մանր կտրտած ոսկու թելերից: Եթե մեծ քանակությամբ գնդիկներ էին հարկավոր, ապա հալոցի մեջ լցնում էին կտրտած թելերը, վրան լցնում մի շերտ ածուխ, նորից մի շերտ կտրտած թելեր ու նորից ածուխ, մինչև հալոցը լցվեր: Հալելուց հետո պարունակությունը դատարկում էին ջրով լի ամանի մեջ, արագ սառեցնում, որ հեշտությամբ մաքրվեն գնդիկները ու որակն էլ ընտիր լինի: Հատիկներով զարդարված ոսկե շատ իրեր են գտնվել նույնիսկ Կարմիր բլուրում: Այնպես որ, այս եղանակի հնությունը հասնում է երեք հազար տարվա: Ոսկերիչները հաճախ էին կիրառում նաև փորագրությունն ու նկարի ֆոնի հեռացման եղանակը, երբ հարկ էր լինում գրքերի թանկարժեք կազմեր պատրաստել: Նաև ընդելուզում էին թանկարժեք քարերով, ինչպես Տիգրան Մեծի թագը:

Ոսկեզօծելու, ոսկեջրելու և արծաթաջրելու եղանակը նույնպես լայնորեն կիրառելի էր: Ոսկեզօծելը ժողովրդական բարբառում կոչվում է նաև ոսկե ջուր: Սակայն բացի ոսկեջրելուց կար ոսկեզօծման մի հատուկ տեխնիկա, երբ ոչ մետաղե իրերը՝ փայտ, ոսկոր, կաշի, մագաղաթ և այլն, ծածկում էին ոսկե փոշու շերտով կամ ոսկու վարաղով՝ թե՛ կրակի օգնությամբ (ապակու վրա), թե՛ կպցնող նյութերի և կոկիչի օգնությամբ: Վերջինս կիրառում էին հատկապես ծաղկող վարպետները: Ալքիմիական ձեռագրերում պահպանվել են ոսկեջուր պատրաստելու մի քանի կերպեր: Բայց դրանցից ամենահիմնականը ոսկին սնդիկի մեջ լուծելն էր և այս եղանակով ոսկեջուր կամ վարաղ ստանալը: Միջնադարյան ալքիմիկոսներին հայտնի էին նաև այս կամ այն մետաղին նմանվող ձուլվածքներ ստանալու շատ եղանակներ: Ձուլվածքը կոչվում էր այդ մետաղի դուռը կամ նրա դուռը մտնող: Ծածկագրի պես մի բան է այս տերմինը: Ոսկուն նմանակելը կոչվում էր «դուռն արեգական», իսկ արծաթին նմանակելը կոչվում էր «դուռն լուսնի»:

Միջին դարերում գործածվել է նաև սևադը, որը ոսկերչության մեջ այժմ էլ ամենատարածված և տպավորիչ տեխնիկական միջոցներից մեկն է: Դեռևս Մովսես Խորենացու և ավելի ուշ՝ Գրիգոր Մագիստրոսի մոտ հանդիպում է դրակոնտիկոն բառը, որը բացատրվում է իբրև արծաթի վրա կիտած մինե կամ սևադ: Նախ պետք էր պատրաստել սևադը, որի բաղադրության մեջ մտնում էին արծաթի, արճիճի, կարմիր պղնձի փոշի կամ մանր խարտուք, ծծումբ, պոտաշ, բորակ և սովորական աղ: Այս խառնուրդը նյութերի որոշ հարաբերությամբ բացում էին ջրով այնքան, որ մածուցիկ լինի: Ապա դրանով պատում էին արծաթե անոթի կամ զարդի նախօրոք փորագրված մասերը: Այնուհետև արծաթե իրը դնում էին բովի վրա, տաքացնում այն աստիճան, մինչև որ սևադը հալվելով ամուր կպչում էր արծաթե իրին: Սևադի ավելորդ մասերը հետո հեռացնում էին քերելով:

Եվ այսօր, երբ օտար ու բարեկամ հիանում են մեր մանրանկարչությամբ, հիանում են հնագույն մագաղաթե ձեռագրերի շքեղ արտաքինով ու կազմերի ընդելուզված ոսկենախշերով, ապշում են Սարդարապատի հազարամյակներից եկող ոսկե ու արծաթե զարդերով, պիտի հիշենք, որ դրանք հայ ոսկերչության արվեստի՝ մեզ փառք բերող նմուշներն են, այն հարյուրավոր ու հազարավոր արհեստավորների, որոնց անունները ոսկե տառերով չգրվեցին պատմության մեջ, բայց պատմության մեջ մնացին նրանց ոսկե գործերը, որոնք այսօր արժանի են հիշատակության:

# Լուսանկարչության պատմությունից և պատմությունը լուսանկարներում

Ժամանակն անհետք չի անցնում: Այն թողնում է բազմաթիվ ու բազմատեսակ վկայություններ, որոնցից յուրաքանչյուրը յուրովի վերարտադրում և ցալիք սերունդներին է հասցնում որոշակի ժամանակահատվածում մարդկային հասարակության, նրա առանձին անդամների կյանքի ու գործունեության պատմությունը:

Ի թիվս դրանց, անցյալի վկաներ են նաև լուսանկարները:

Լուսանկարչությունը կամ ֆոտոգրաֆիան ունի հնագույն արմատներ: Ֆոտոգրաֆիան հունարեն բառ է, բաղկացած է ֆոտո (լույս) և գրաֆիա (գրել, գծել) բառերից: Իր ձևավորման սկզբնաշրջանում՝ 15-րդ դարավերջին, այն հանդես էր գալիս որպես գեղանկարչությանն օգնող օժանդակ միջոց: Հենց այդ ժամանակաշրջանից էլ փորձեր էին կատարում թղթի կամ կտավի վրա հատուկ խցիկի միջոցով պատկերագծել, ուրվագծել օբյեկտը: Այսպիսի փորձեր կատարվել է նաև Լեոնարդո Դա Վինչիի կողմից: Սակայն լուսանկարչությունը իր իսկական իմաստով հանդես է եկել ավելի ուշ շրջանում: Նրա պատմության մեջ շրջադարձային է եղել հատկապես 19-րդ դարը, երբ Եվրոպայում ասպարեզ են գալիս նորարարներ Ուեջվուդը (Անգլիա), Լ. Ժ. Դագերը (Ֆրանսիա), Ժ. Ն. Նեպսան, Ու. Գ. Տոլբոտը (Անգլիա), Գ. Ֆոգելը (Գերմանիա):

Լուսանկարչության նվաճումները էական նշանակություն ունեցան պատմագիտության և ազգագրության համար, օգնեցին դեպքերի ու դեմքերի, ազգագրական նյութի նկարագրությունը տեսանելի և բնական տեսքով փոխանցել սերունդներին:



Խեչոն՝ զինակիցների հետ

Լուսանկարչությունը մեծ տարածում գտավ նաև հայ իրականության մեջ, որի մասին վկայում են Հայաստանի Պատմության արխիվում գտնվող բազմաքանակ լուսանկարները: Դրանք հիմնականում վերաբերում են 19—20-րդ դարերին և ընդգրկում են այդ ժամանակահատվածի մասին հարուստ տեղեկություններ: Լուսանկարներից շատերը աչքի են ընկնում կատարման բարձր որակով և ճաշակով: Լուսանկարչատներ կային ոչ միայն Հայաստանում, այլև հայաբնակ մյուս վայրերում: Հաճախ դրանք իրենց մասնաճյուղերն ունեին տարբեր քաղաքներում: Թիֆլիսում հայտնի էին Լալայանցի, Ալեքսանդրապոլում՝ Մուշեղյանի, Ախալ-



Քեռի, Վարդան, Իշխան Արղության իրենց ընկերներով

քաղաքում՝ Եղիազարյանի, Ախալցխայում՝ Վահան Ալբերտովի, Լևոն Կապոյանի, Ավետիսյան եղբայրների (մասնաճյուղ ունեին նաև Բորժոմում) և շատ ուրիշների լուսանկարչատները: Իսկ Ավետիսյան եղբայրների լուսանկարչատունը պարգևատրվել էր Կովկասի փոխարքա Վորոնցով-Դաշկովի կողմից, ինչպես նաև՝ 1901 թ. Կովկասյան հոբելյանական ցուցահանդեսների շքանշանով:

Արխիվում պահպանվող լուսանկարները պայմանականորեն կարելի է բաժանել մի քանի խմբերի: Առաջին խմբի մեջ տեղավորենք այն ֆոտոփաստաթղթերը, որոնք հետաքրքրում են ազգագրությանը: Դրանց մեջ մեծ թիվ են կազմում հայկական ազգային տարազները պատկերող լուսանկարները: Եթե դրանք զուգակցենք ընտանիքները, բնակարանների ներքին կահավորանքը, ծիսական արարողությունները, տոնակատարությունները, աշխատանքային պահերը, զբաղմունքը, քաղաքների, գյուղերի առանձին հատվածները պատկերող լուսանկարների հետ, ապա տեսանելի կերպով կգծագրվի հայի ավանդական կենցաղը, այն մթնոլորտը, որով շնչել և ապրել են հայաբնակ քաղաքն ու գյուղը:

Շնորհիվ հավաքչական աշխատանքների, արխիվում կենտրոնացված մեծաթիվ լուսանկարները մեզ մանրամասնորեն ներկայացնում են մի շարք շրջանների, այդ թվում Ախալցխայի, Ախալքալաքի, Բոգդանովկայի շրջանների բնակչությունը: Դրանց օգնությամբ մենք ծանոթանում ենք ախալցխացի մեծահարուստ Հազարապետյանների տոհմի շառավիղների, նշանավոր զինագործ Հակոբ Չիֆթալարյանի, Եղիսաբեթյան դպրոցի սանուհիների, այդ շրջանների հանրահայտ երաժիշտների, արհեստավորների, մտավորականության և այլոց հետ:

Ճակատագրի բերումով հայ ժողովրդին հեշտությամբ չի տրվել խաղաղ կյանքի իրավունքը: Ի տարբերություն աշխարհի շատ ժողովուրդների, յուրաքանչյուր օրվա գոյության համար նա վճարել է իր զավակների արյամբ, անցել ֆիդայական հերոսական մարտերի, Մուսա լեռան, Սարդարապատի ճակատամարտերի միջով, ցնցել ու զարմացրել աշխարհին մարդկային հնարավոր ու անհնարին քաջագործությամբ, կամքով, անձնվիրությամբ: Այսօր լեգենդ դարձած այդ մարդկանց մասին պատմում են ականատեսները, երգերը, հեքիաթները, փաստաթղթերը և հատկապես լուսանկարները, որոնք, առանց կողմնակի միջնորդության, մեզ են ներկայացնում պարզ ու հասարակ արտաքինով առնական այրերի բը-

նակաև նկարագիրը: Արխիվում պահպանվում են Անդրանիկի ու իր զինվորների, Աղբյուր Սերոբի, Գևորգ Չաուշի, Դժոխք Հրայրի, Քեռու, Դուման Նիկոլի, Սարդարապատի ճակատամարտի հերոսների և բազում այլ լուսանկարներ:

Պատմության ամեն տեսակի կեղծարարների դեմ ամբողջ աշխարհին ճշմարտությունն են բարբառում և մարդ կոչվող չարագործ գազաններին հավերժ անարգանքի սյունին են գամում հայկական կոտորածների լուսանկարները:

Ազգային անկախության և պետականության վերահաստատումը եղել և մնում կի համար պայքարել են ողջ ժողովուրդը դի ամենանվիրական իղձը: Այս նպատակի համար պայքարել են ողջ ժողովուրդը և նրա քաղաքական կուսակցությունները: Արխիվում պահպանվում են հայ քաղաքական գործիչների, ինչպես նաև Հայաստանի Հանրապետության կառավարության անդամների լուսանկարները:

Անցյալից մեզ հասած ու մեզ հետ զրուցող այս լուսանկարները, որոնցից շատերի մասին այսօր պատմեցինք, արժանի են ամենամեծ հոգատարության և ուշադրության: Դրանք ճանաչողության, հայրենասիրության, անձնվիրության դպրոց են, և մեզանից յուրաքանչյուրն իր գործունեությամբ պետք է արժանի լինի լուսանկարներից մեզ նայող սպասումով լի հայացքներին:

ԿԱՐԻՆԵ ՍԱՐԳՍՅԱՆ,
ՀԽՍՀ Պատմության պետական կինոֆոտոֆոնոփաստաթղթերի կենտրոնական արխիվի աշխատող

«ՊԻՈՆԵՐ» № 11-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| | | 19 | 2 | | |
| | | 9 | 16 | | |
| 4 | 17 | 10 | 11 | 8 | 21 |
| 18 | 7 | 12 | 13 | 14 | 3 |
| | | 15 | 6 | | |
| | | 5 | 20 | | |

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:
ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 12. 89



Հանձնված է արտադրության 03.10.89 թ.: Ստորագրված է տպագրության 01.12.89 թ.: ՎՖ 11445: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 61032: Պատվեր՝ 1190: Գինը՝ 15 կոպեկ:
Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 03.10.89 г. Подписано к печати 01.12.89 г. Формат 70×100 1/16. ВФ 11445. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печат. 2,92 усл. печ.листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 61032. Заказ 1190. Цена 15 коп.
Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկը՝ ԱԵԼԻՏԱ ՀԱԿՈԲՋԱՆՅԱՆԻ, 12 տ. Երևան, «Հայաստան, 1988, դեկտեմբեր»

**ՄԻԽԱՅԻԼ ՄԱՏՈՒՍՈՎՍԿԻ**
**Թարգմանեց ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆԸ**

Փարիզի շատ փողոցներում կարելի է հանդիպել մի փոքրիկ հայ մանչուկի լուսանկարով ազդագրի՝ «Armenia: SOS»:



Հար տոնական Փարիզն է շողշողում վետվետ՝
Արժանացած ձմեռվա արևերեսի,
Իր խաբուսիկ ազդերով բազում, խայտաբղետ,
Իրարանցում-ժխորով իր Մոնպառնասի:

Բայց մեզ կտրում կոպտորեն, ետ է դարձնում
(Տարածությունն անզոր է ցավը խլացնել)
Ամենուրեք փակցրված ազդագիրը նույն
«Armenia: SOS», փրկեցեք հոգիները մեր:

Ու աշխարհը՝ թվում է փոքրիկ մի վանդակ.—
Ու ասես հենց մեր կողքին կանգնում է նեռի
Դաժան ձեռքով ավերված քաղաքն Սպիտակ,
Քաղաքը՝ սև կույտերով թարմ դագաղների:

Անդ չի լռել ոռնոցը դեռ շշակների,
Անդ տիրաբար ձգվում է Այսօրը հավերժ,
Եվ ձայնն ինչ-որ մեկի դեռ ողջ ու կենդանի
Կանչում, կանչում է, կանչում տարտարոսից դեռ:

Ու թվում է՝ շատ հեշտ է խելագարվելը,
Երբ կույր ուժի ցնցումով յոթ-ութ հարկանի
Շենքերն հանկարծ պահի մեջ խարխլվում են ու
Եղբայրական գերեզման, շիրմաթումբ դառնում:

Ու քանի դեռ Փարիզի ամեն խաչմերուկ
Արցելակող ակների ճիչերով է լի,
Ամեն կողմից մեզ է միշտ նայում մի մանչուկ
Իր հայկական աչքերով, աչքերով որբի:


Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆԶՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՒՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր):

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Լ.:

ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.